Շեփորի անսպասելի կանչը խախտեց գիշերային անդորրը։ Վախեցած թռչունները թափահարեցին իրենց թևերը, և անտառը կենդանություն առավ։ «Զանգակ» ճամբարի ննջարանները հաջորդաբար լուսավորվեցին։

Գիշերային տագնապ է։

Ծաղկածորի անտառային սառնությունը ներս խուժեց ննջարանները։ Ճամբարականներից մի քանիսը սկզբում ծուլացան անմիջապես վեր կենալ տաքուկ անկողիններից։ Հաճելի է, երբ փաթաթվում ես փափուկ վերմակի մեջ ու քնում հանգի՞ստ, խաղա՞ղ, իսկ դրսում ցուրտ է։

Սակայն շեփորի գիշերային ազդը մի նորություն էր ճամբարականների համար։ Զանգած մի քանի րոպե՝ հրապարակում շարվում են պիոներական ջոկատները։ Ճամբարի պետ Հակոբ Սարգսյանը ծանոթանում է գիշերային արշավի երթուղու հետ։

— Արշավին կմասնակցեն միայն ավագ պիոներները,— ասում է նա։— Արջաղբյուրի ձորով դուրս կգանք Մաքրավանքի բլուրը և կդիտենք գիշերային Հրազդանն ու լիճը։

Փոքրերը նախանձով են լցվում։ Ուրեմն, իրենք դեռ չեն կարող արշավի գնալ։ Ափսո՜ս։ Արայիկը նույնիսկ փորձում է լաց լինել։ Նա մի կերպ կոկորդում խեղդում է արցունքներն ու մյուսների հետ վերադառնում ննջարան։

Արշավային շղթան ձգվում է ճամբարից դուրս։ Սկզբում քայլում են առաջին և երկրորդ ջոկատների պիոներները։ Նրանք իրենց հետևից «ձգում են» ողջ արշավախումբը։ Անահիտը, Գուրգենն ու Լևոնը քայլում են միասին։ Գետինը թաց է, լպրծուն։ Սայթաքելիս՝ օգնում են ձեռնափայտերը և... արահետի երկայնքով աճած թփերի ու ծառերի ճյուղերը։ Արշավախումբը մեծ է։ Հարյուր հոգուց ավելի։ Ֆիզդեկ ընկեր

ԳԻՇԵՐԱՅԻՆ

կարինեն քայլում է վերջից։ Այդպես է արշավի կարգը. մեծերից մեկը պետք է սահմանափակի արշավախմբի գիծը, որ ետ մնացող չլինի։

Արջաղբյուրը ճամբարից հեռու չէ։ Արշավականներից մի փոքր խումբ դադար է առնում ու հետո նորից քայլում առաջ։ Նրանք մտնում են անտառ։ Երեխաներից շատերն առաջին անգամ են անտառում լինում գիշերը։ Անահիտը

## ԲՆԱՊԱՏԿԵՐ

ՎՌԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Ծովի նման տալիս ծափին
Ու ծփում է արտը հասուն.
Հովի գրկում, ամռան տապին
Անուշ-անուշ երգ է ասում։
Դեղին ծովում՝ ծիծաղ ու ծափ,
Հասկն է շեկլիկ հանդարտ շողում.
Դարձած մի նավ արտում անափ՝
Կոմբայնն է մեր նորից լողում։
Ճանանչ ճամփով երկինք ելած,
Որպես մի վառ ու մեծ նարինջ,
Շող է շաղում համատարած,
Հուր է մաղում արևը ջինջ։
Եվ հասկերի ծովն է հևում,
Ու ճանանչը թափվում է վար.
Ծարավել է արտի ծովում
Հնձվոր քեռին կոմբայնավար։
Բայց մի տղա սափորն առած,
Անրջելով կապույտ հեռուն,
Լեռնալանջով իջնում է ցած,
Ջուր է տանում հնձվոր քեռուն։

Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ
Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ
ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶ
ՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆ
ՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ
ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Լույս է տեսնում
1923 թվականից




№ 8 օԳոՍՏոՍ
1966 թ.

հոգնեց քայլելուց: Մի պահ նա կանգնեց ու մեջքով հենվեց ծառի բնին: Գլխավերևում կախված տերևից անձրևի երկու խոշոր կաթիլ ընկան աղջըկա ծոծրակին, հետո մեջքի ակոսով գլորվեցին ցած: Անահիտը փշաքաղվեց: Ջրի փոքրիկ շիթերը այնքան սթափեցրին նրան, որ մի պահ սարսռեց: Մոտեցավ Լևոնը:

— Լևոն,—շշնջաց աղջիկը,— կանգնիր այստեղ:

— Ի՞նչ է, վախեցա՞ր:

— Ը՛, ը՛, այո:

— Ումի՞ց:

Լևոնը պատրաստ էր օգնել ընկերուհուն գիշերվա այդ պահին: Նա շատ կուզեր մի բանով աչքի ընկնել այդ օրը, որ հետո ճամբարում բոլորը պատմեին իր մասին: Բայց այդպես չեղավ: Նա միայն ժպտաց մեծավարի և քաշելով Անահիտի ձեռքից՝ միացան արշավախմբին:

Մաքրավանքի բլուրը արշավի վերջնակետն էր: Այստեղ էլ պետք է դադար առնեին: Այս բլուրը ճամբարականների համար աշխարհում ամենաբարձրն է: Հեռվում լուսնի արծաթավուն փայլը տարածվել էր Հրազդան լճի վրա, ու լիճն ամբողջապես մի գույնով ներկվել: Սակայն զարմանահրաշ մի տեսիլք է բացվում պիոներների առջև: Հատուկենտ երևացող ավտոմեքենաները

Ֆիզդեկ ընկեր Կարինեն մթության մեջ ժպտում է: Նրա խորամանկ ժպիտը ոչ ոք չի նկատում: Իհարկե, մանկավարժներից մի քանիսն էլ գիտեն ավտոմեքենաների «լողալու» գաղտնիքը: Գիտեն, որ Հրազդան լիճը կիսված է երկու մասի և ճանապարհը մի փոքր ժապավենով կտրում անցնում է լիճը: Գիշերն այդ ճանապարհը չի երևում: Լուսնի խորամանկ ցոլքերը միացրել են կիսված լիճը, ու թվում է, թե ճանապարհով անցնող մեքենաները լողում են լճի վրայով:

— Ափսո՜ս, — վշտանում է Աշոտը: — Իսկ մենք կարծում էինք, թե ջրամեքենաներն են լողում:

Մանկական անհոգ ծիծաղը տարածվում է անտառային խորհրդավոր մթության մեջ: Ճամբարականները հափշտակված են Հրազդանի գիշերային գեղեցկությամբ:

— Այսօր Հրազդանը նման է մի շինարարական հսկա կառույցի,—պատմում է ճամբարի պետը:— Հիմա բարձրանում են լեռնաքիմիական կոմբինատի սյուները, հետո այն կդառնա մեր հանրապետության արդյունաբերության սիրտը: Կոմբինատը կարտադրի ցեմենտ և քիմիական զանազան նյութեր: Այսուհետև Երևանի ալյումինի գործարանը իր հումքը չի ստանա հեռավոր Ուրալից: Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը շուտով

# ՋՈՒՐԵՐԻ ԽՈՐԱՄԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ

մթության մեջ իրար հետևից մոտենում են լճին ու... անցնում նրա վրայով: Ահա այսպես՝ առաջին ավտոմեքենան, հետո երկրորդը, երրորդը, չորրորդը: Լողացող ավտոմեքենաները անցնում են լիճը և շարունակում ճանապարհը:

— Ավտոները լողո՜ւմ են, ավտոները լողո՜ւմ են,— երկար դիտելուց հետո համարյա միաձայն բացականչում են պիոներները:

մեր հայրենիքին կտա 10 տեսակ արտադրանք, որով ավելի կհարստանա մեր հանրապետությունը: Իսկ երբ կավարտվի կոմբինատի շինարարությունը, Մարմարիկ գետի ափին կծփա մի նոր լիճ, նորից Մարմարիկ անունով, որը կդառնա երեխաների և երիտասարդության համար մի հիանալի հանգստավայր: Շուտով Հրազդանը այնքան կմեծանա, որ կունենա 40 հազար բնա-

# ՊԱՐԾԱՆՔՆ ԱՄԲՈՂՋ ՄԵՐ ՔԱՂԱՔԻ

*ՄԱՄԻԿՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

Ինձ հետ հաճախ քեռի Վանոն
Դուրս է գալիս զբոսանքի,
Մենք իջնում ենք Աբովյանով
Կամ մտնում ենք զբոսայգի։

Նրան ամեն, ամեն անցորդ
Ողջունում է մտերմորեն,
Ու շատերն են տարբեր հարցով
Այստեղ-այնտեղ դիմում իրեն։

Բոլոր մարդիկ մեր քաղաքում
Ճանաչում են, գիտեն նրան,
Ու բոլորն էլ անչափ հարգում,
Մեծարում են միաբերան։

Իսկ թե քեռիս ինչ է անում,
Հիմա ասեմ իսկույնևեթ.
Ինժեներ չէ ինքը հմուտ,
Ոչ էլ հայտնի ճարտարապետ։

Հեղինակ չէ նա գրքերի
Կամ գիտնական շատ մեծանուն,
Մի հասարակ մարդ է քեռիս.
Բանվոր՝ իրենց գործարանում։

Երբ մտնում ես գործարանն այդ,
Անտառ ես դու ասես մտնում,
Սկիզբն ու վերջն այնտեղ անհայտ,
Գնո՜ւմ, գնո՜ւմ ու չես գտնում։

Միայն ամեն քայլիդ արդեն,
Ծառերի տեղ՝ երկար, փշոտ,
Կանգնում են քո դեմ երկաթե
Աշտարակներ խոշոր-խոշոր։



*Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

Եվ կաթսաներ՝ շարան-շարան,
Կարասների պես հաստափոր,
Ամեն մեկը մի-մի հորան,
Մետաղյա մի հսկա սափոր։

Քեռիս հենց այդ կաթսաներում
Կարծես ճաշ է եփում բուրիչ,
Նայում և այն չես տարբերում
Սպասից ու կաթնապուրից։



*կիչ՝ իր լայնահուն պողոտաներով ու վարդագույն շենքերով, կանաչ՝ պուրակներով ու կուլտուրայի բազմաթիվ օջախներով։*

*— Այ, տեսնո՞ւմ եք,— շարունակում է ընկեր Հակոբը,— մեզանից ձախ Աթարբեկյանգէսն է, իսկ աջ կողմում ուրվագծվում են նրա ջրային փակոցները։*

*Գիշերային մթության մեջ ճամբարականները տեսնում են հեքիաթային քայլերով կառուցվող Հրազդանը, պատկերացնում նրա լուսավոր հեռանկարները։*

*Զրույցն ավարտված է։ Երեխաները մի պահ սթափվում են երազանքներից ու պատրաստվում վերադառնալ ճամբար։ Լույսը դեռ չէր բացվել. հեռվում հորիզոնը կամաց-կամաց վաղորդյան շղարշ էր հագնում։*

ԿԱՄՈ ՄԿՐՏՉՅԱՆ

Բայց թե ի՞նչ ճաշ, ամբողջ տարին
Ծնվում, կյանք է առնում այնտեղ
Մի այնպիսի անգին բարիք,
Որ չես գտնի դու ոչ մի տեղ։



Հասավ մի տեղ՝ տեսար մեկ էլ
Փոխվում է ու դողեր դառնում.
Առանց դողի, դուք հո գիտեք,
Ավտոն իսկույն կանգ է առնում։

Մի ուրիշ տեղ դառնում է նա
Մերկ լարերին պատյան, կեղև,
Որ ուր ասես ձգվեն գնան,
Եվ հոսի լույսն ինչպես հեղեղ.

Այդ բարիքը պետք է գալիս
Ե՛վ նավերին սովորական,
Որ ծովերում լող են տալիս,
Ե՛վ նավերին տիեզերական...

Այս բոլորից հետո, ասե՛ք,
Քեռիս հանգիստ ո՞նց կմնա,
Ո՞նց կարող է նա սպասել,
Որ ինքն իրեն գործը գնա։

Մեկ հասնում է կաթսաներին,
Որ տեսնի «ճաշն» ի՞նչ է դառնում,
Խողովակներն ի՞նչ են վերից
Բերում անտես նրան խառնում։

Մեկ էլ տեսար նա կշտապի
Սարքերի մոտ «հնարամիտ»,
Որ դրանցով արագ չափի,
Ճշտի ամեն շարժում ու միտք։

Հենց որ սլաքն այստեղ շեղվում,
Կամ թե լամպն է վառվում, ասենք,
Պարզ է այնտեղ՝ կաթսաներում
Իսկույն ինչ-որ բան պակասեց։

Բայց զինվորի նման արթուն,
Զգաստ է նա ամեն պահին,
Ինչ էլ լինի՝ ի՛նքն է հաղթում,
Չի՛ նահանջում ճանապարհից։

Ու ստեղծած բարիքն իր մեծ
Հոսում է միշտ առատ-առատ,
Հոսում ամբողջ մեր երկրով մեկ՝
Դեպի հյուսիս, դեպի հարավ։

Իսկ այնտեղից՝ նամակ հաճախ՝
Գործարանից յուրաքանչյուր.
«Մենք Ձեզանից գոհ ենք անչափ,
Ուղարկել եք լավ կաուչուկ»։

Դե, դո՛ւք ասեք, նրան հիմա
Ո՞վ չի սիրի, ո՞վ չի հարգի,
Ա՛յ թե ինչու դարձել է նա
Պարծանքն ամբողջ մեր քաղաքի։



# ԱՅՍՊԵՍ ԷԼ ԿԵՂԾԻ՞Ք

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*

Ֆանտանի հանդում լոր էինք որսում իմ որդի Լևոնի հետ: Հանկարծ արտի եզրից, գրեթե ոտքերիս տակից, տատրակի չափ մի թռչուն վեր թռավ, օրորվելով ցած գնաց և ընկավ հաջորդ արտի մեջ: Որքան նկատեցի, մի թևը ընկյավ անզոր:

«Վիրավոր է»,— մտածեցի ես և այդ պահին ոտքիս առաջից թույլ ծվոց լսեցի: «Ա՜յ դու սիրկա, մանրաբազե է, հավանաբար լոր է հրել»,— մտածեցի ես և ցողունները դես-դեն ծալելով՝ սկսեցի փնտրել վիրավոր լորը: Մեծ եղավ իմ զարմանքը, երբ լորի փոխարեն մանրաբազեի երկու ճուտ գտա կողք-կողքի կանգնած: Նրանք կտուցները վեր էին տնկել և ծվում էին անօգնական: Վերցի, չաղլիկ ճտեր էին, լորից քիչ փոքր: Դրի պայուսակիս մեջ և ցած իջա՝ տեսնեմ ուր մնաց դրանց վիրավոր մայրը: Հասա նրա ընկած տեղը: Նորից թռավ այնպես ծուռումուռ և անճարակ, որ էլ կասկած չմնաց, որ վիրավոր է: Այն ժամանակ ես պայուսակիցս հանեցի նրա ձագերին, դրի մի քարի վրա և ետ-ետ գնացի: Ձագերը ծվում էին, թե՝ մայրի՜կ, փրկիր մեզ...

— Եդ ի՞նչ բանի ես, — լսեցի հետևիցս: Որդիս էր:

Պատմեցի: Ծիծաղեց:

— Եվ դու հավատու՞մ ես, որ նա վիրավոր է:

Ու ավելացրեց ժպտալով.

— Այդքան փորձ ունես, էլի խաբվում ես:

Հասկացա տղայիս ակնարկը: Այո, վիրավոր է ձևանում, որ հետապնդեմ իրեն և հետզհետե հեռանամ ձագերից:

Առարկեցի որդուս, դե նա էլ բնասեր է, հասկանում է թռչունների արարքը:

— Դե՛, հիմի տեղը մատնված է, գնա թռցրու, տեսնենք վիրավոր չի՞:

Ու Լևոնին պատվիրեցի «մաղել» արտը:

Գտավ բազեին, թռցրեց և, իսկապես, վիրավոր լինելու ոչ մի նշան: Սլանում է թեթև-թեթև: Այլևս կեղծելու կարիք չուներ, ձագերն արդեն մեր ձեռքին էին:

Բայց կարծես այնպես ստացվեց, թե մայրն իզուր էր խորամանկություն անում, չէ՞ որ դրանից ոչ մի արդյունք չստացվեց: Իզուր չէր: Եթե վիրավոր ձևանալը իմաստ չունենար, մանրաբազեի մեջ չէր լինի բնազդի վերածված այդ սովորությունը: Իսկ այս դեպքում ճուտերն էին մեղավոր: Եթե նրանք ծվծվոցով չմատնեին իրենց տեղը, ես հետապնդելու էի նրանց «վիրավոր» մայրը՝ նրան բռնելու հույսով: Դրանով էլ ճտերը փրկվեցին:

# ՄԵՐ ՃԱՄՓԱՆ

*ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՏԱՐՈՆ*

Աղավնին է ճախրում օդում
Առավոտյան այս ջինջ պահին,
Բարդիներն են կանգնած արթուն
Մեր դեմ փռված ճանապարհին:

Անցնում ենք մենք ուրախ երթով,
Հեռուներն են մեզ հմայում,
Մեր սրտերի խնդուն երգով
Գարուններն են մեր դեմ վառվում:

Բարդիները տարիներ ձիգ
Հսկում են մեր երթը անդուլ,
Ճանապարհը դեպի գալիք,
Ճանապարհին՝ ձոր ու անդունդ:

Բայց վախ չունենք անդունդներից
Եվ ձորերից խոր ու մթին,
Ոլորվում է ճամփան նորից,
Կանչում է մեզ հեռուն կրկին:

# ՀԵԾԱՆՎՈՐԴՆԵՐԸ

ՀԱՆՐԻ ԶԱՐՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Դեպի հորիզոնն իջնող կարմի՜ր-կարմիր արեգակի շողերից ավելի էին կանաչել հրապարակի ծառերը։ Ամֆիթատրի վրա գույնզգույն հեծանիվներ էին պտտվում։ Իսկ վերևում կապույտ էր, այնպիսի՜ կապույտ... Եվ այդ կապույտ հրապարակի վրա էլ ծիծեռնակներն էին պտույտներ գործում. ծիծեռնակներն էլ կարծես հեծանիվ էին քշում։ Եվ այդ ամենը հեծանիվի վրա նստած տղային թվում էր գունավոր մի երազ։ Տղայի թշերն էլ կարծես մայր մտնող արեգակներ լինեին։ Իսկ աչքերը գորշագույն էին։ Եվ այդ աչքերում ինչ-որ թախիծ կար։ Տղան նայում էր կապույտի վրա «հեծանիվ քշող» ծիծեռնակներին ու մտածում, թե ինչքա՜ն համերաշխ են նրանք...

Դիմացից եկող հեծանվորդը դիպավ տղային։ Տղան վայր ընկավ։ Ծնկները քերծվեցին, իսկ հեծանիվը թռավ՝ մի կողմ։ Տղան ոտքի կանգնեց, մոտեցավ, որ բարձրացնի ընկած հեծանիվը. կարմիր մի հեծանիվ էր դա, որի նիկելապատ ղեկը մի փոքր ծռված էր։ Իսկ այդ հեծանիվի կողքին կանգնած էր այն հեծանվորդը, որը վայր էր գցել տղային։ Նա բացել էր բերանն ու ժպտում էր, իսկ ատամներն իրարից հեռու-հեռու էին... Իսկ նրանից քիչ հեռու կանգնած էին երկու տղաներ, որոնց բերանները նույնպես բաց էին...

— Չե՞ս կարող կարգին քշել, — հարցրեց տղան։

— Դիտմամբ հո չարեցի՞, — պատասխանեց նա, որի ատամներն իրարից հեռու-հեռու էին։

— Դիտմամբ արեցիր, — ասաց տղան։

— Ինչո՞ւ պիտի դիտմամբ անեմ։

— Որ հեծանիվ չեմ տալիս քշեք։

— Քո հեծանիվը մեզ պետք չի, ցիգանի մեկը, — ասացին նրանք ու ծիծաղեցին։

Նրանք ծիծաղում էին տղայի վրա։ Իսկ ինքը երեկ ամբողջ օրը նրանց հեծանիվ էր տալիս։ Իսկ նրան վայր գցող տղայի ատամների արանքներից այնպիսի՜ չարություն էր թափվում։ Մինչդեռ տատը տղային ասել էր, որ նրանք, ովքեր իրարից հեռու-հեռու ատամներ են ունենում, բարի սիրտ են ունենում...

Տղան դառնացել էր։ Բարձրացրեց ընկած հեծանիվը, ուղղեց ծռված ղեկը, նստեց ու սկսեց դանդաղ պտտվել ամֆիթատրի վրա։ Չորս կողմը աղմուկ էր, ճիչ, բայց նրա մտքերն ուրիշ տեղ էին։ Մտածում էր. մի՞թե ինքը «ցիգան» է։ Երեկ ամբողջ օրը նրանց հեծանիվ՝ տվեց։ Նրանք քշում էին, իսկ ինքը կանգնած նայում էր։ Ինքը սիրում էր, երբ ուրիշներն էլ քշում էին իր հեծանիվը։ Բայց ախր նրանք համը հանեցին։ Ամեն անգամ ասում էին՝ մի պտույտ, բայց տասնմեկ պտույտ էին քշում... և իսկի շնորհակալություն էլ չէին հայտնում։ Իսկ այս տղան, որն այսօր խփեց ու վայր գցեց նրան, տարավ հեծանիվը և մի ամբողջ ժամ չբերեց։ Վերջում էլ եկավ՝ անիվներն ու ղեկը ծռած։ Բայց ինքը էլի ոչինչ չասաց նրան և տանը դարձյալ հորից նախատինք ստացավ։

«Արծիվդ» նմանվել է ոտքը կոտրած ծիվծիվի, ծաղրեց նրան հայրը։

— Ես չեմ արել, հայրիկ, ասաց ինքը։

— Բա ո՞վ է արել։

— Մի տղա։

— Ո՞վ է այդ տղան։

Չգիտեմ. իրարից հեռու-հեռու ատամներ ունի։

Հայրը ծիծաղեց։ Հետո ուղղեց անիվներն ու ղեկը և պատվիրեց, որ նա հեծանիվը իրարից հեռու-հեռու ատամներ ունեցողներին չտա։ Ինքը խոստացավ, որ չի տա։ Իսկ ինչո՞ւ այդպես պիտի լիներ։ Ինքը բոլորին էլ ուզում էր տալ իր հեծանիվը։ Եվ եթե նրանք պահեին իրենց տված խոսքը ու չծռմռեին իր հեծանիվը, ապա այսօր էլ միասին հեծանիվ կքշեին։ Եվ ինչո՞ւ միայն այսօր՝ վաղն էլ, մյուս օրն էլ, միշտ էլ կքշեին...

Իսկ հիմա նրանք իրեն «ցիգան» էին ասում...

Տղան բարձրացրեց իր վայր ընկած հեծանիվը, նստեց վրան ու նորից սկսեց պտույտներ գործել։ Բայց հաճույք չէր ստանում, որովհետև գիտեր, որ այն տղան նորից վայր է գցելու իրեն...

Դրը՜մփ. այս անգամ հետևից խփեցին ու նա վայր ընկավ։ Հիմա էլ ձեռքերի ափերը քերծվեցին։

Հա՜, հա՜, հա՜, հա՜, ցիգանի մեկը, — ծիծաղում էին նրանք։

Այս անգամ տղան ոչինչ չասաց նրանց, որովհետև արդեն հաստատ գիտեր, որ խոսքերով չէր կարող ազդել նրանց վրա։ Քիչ էր մնում բարկությունից լաց լիներ, բայց հիշեց հոր խոսքերն ու զսպեց իրեն։ Հայրը չէր սիրում լալկաններին։

Այդ ժամանակ մի հորաքույր մոտեցավ ծիծաղողներին ու հանկարծ ապտակեց տղային վայր գցողին։

— Ինչո՞ւ ես խփում, է՛, — բողոքեց տղային վայր գցողը։

— Սուս կաց, անպիտան, ի՞նչ ես ուզում այս խեղճ տղայից...

— Հա՛ սպասիր, ցիգանի մեկը, — թարսուն սպառնաց նրան հորաքրոջից ապտակ կերած տղան ու հեռացավ։

Այն երկուսն էլ թարսուն սպառնացին նրան ու հեռացան։

*Իսկ հորաքույրը մոտեցավ, ժպտաց։ Պայուսակից թաշկինակ հանեց։ Կապեց նրա քերծված ծնկը։ Այնքան նուրբ էր այդ հորաքրոջ թաշկինակը և այնքան լավ հոտ էր գալիս նրանից։*

*Տղան շնորհակալություն հայտնեց ու նայում էր իր ծնկը կապող հորաքրոջ փափուկ, ճերմա՜կ-ճերմակ ձեռքին։ Հորաքույրն ուներ կապույտ աչքեր։ Իսկ մազերը կարմրին էին տալիս։ Տղային թվաց, թե այդ մազերը արևից չէին կարմրել, այլ հորաքույրը ինքն էր ներկել, և այնքան լա՜վ էր ներկել...*

*Հետո հորաքույրը խփեց նրա քթին, մի անգամ էլ ժպտաց ու հեռացավ։ Իսկ տղան նորից սկսեց պտույտներ գործել։ Բայց դարձյալ թախիծ կար նրա գորշագույն կլոր աչքերում։ Ախր նա չէր սիրում մենակ հեծանիվ քշել։ Իսկ իրարից հեռու-հեռու տատմներ ունեցողն ու իր ընկերները կարծում էին, թե ինքը ժլատ է։*

*Տղան կանգնեցրեց հեծանիվն ու ղեկին հենված նորից սկսեց նրանց մասին մտածել... Ախր ինքը նրանց ոչի՜նչ չէր արել՝ լավությունից բացի...*

*Հանկարծ նա ինչ-որ ծակող հայացք զգաց իր վրա։ Շուռ եկավ. տեսավ իրենից մի քիչ ավելի փոքրիկ մի տղայի, որը նման էր այն հորաքրոջը։ Նա էլ կապույտ աչքեր ուներ, ճերմակ դեմք ու արևագույն մազեր։ Նրանք ժպտացին իրար։ Զարմանալի էր. այդ տղայի ժպիտն էլ նման էր այն հորաքրոջ ժպիտին։ Տղան հասկացավ, որ կապտաչյան հեծանիվ քշել էր ուզում։*

*— Ուզո՞ւմ ես քշես, — հարցրեց նրան։*

*— Ուզում եմ, միայն մի պտույտ։*

*Տղային արդեն ծանոթ էին այդ «մի պտույտները», բայց նրա համար միևնույն էր հիմա։ Նա տանջվում էր մենակությունից։ Միայն թե մեկնումեկի հետ ընկերություն աներ։ Ախր այնպիսի՜ մայրամուտ էր, այնպիսի՜ ճիչ ու աղմուկ, և ծիծեռնակներն էլ՝ այնպես համերաշխ էին պտույտներ գործում...*

*— Ինչքան ուզում ես քշի՛ր, — ասաց նա ու հեծանիվը տվեց կապտաչյային։*

*Հետո, երբ կապտաչյան սկսեց պտտվել հրապարակում, տղան թեթևացած շունչ քաշեց. լավ էր զգում իրեն։ Լավ էր զգում, որովհետև այլևս մենակ չէր։ Եվ նրա գորշագույն թախծոտ աչքերը կենսուրախ դարձան...*

*Կապտաչյան մի լրիվ շրջան գծեց հրապարակի վրա, մոտեցավ նրան, իջավ հեծանիվից ու ասաց.*

*— Շնորհակալություն։*

*— Էլի քշիր, — ժպտաց նրան տղան։*

*— Իսկ դո՞ւ։*

*— Ես շա՜տ եմ քշել։*

*Կապտաչյան աշխուժացավ.*



*— Դե լավ, մի պտույտ էլ կքշեմ։*

*— Ինչո՞ւ մի պտույտ, մի քանի պտույտ քշիր։*

*Կապտաչյան մի քանի պտույտ էլ քշեց, նորից կանգ առավ, շնորհակալություն հայտնեց։*

*— Քշի՛ր, էլի՛ քշիր։*

*Կապտաչյան քշում էր, իսկ տղան կանգնած նայում էր։*

*Հետո արևն ավելի կարմրեց։ Կապտաչյայի ճերմակ թշերն էլ կարմրել էին...*

*Հետո տղան նկատեց այն տղային, որը ներքև գցեց իրեն և որը ապտակ կերավ այն հորաքրոջից։ Նա մի փոքր հեռու կանգնած՝ նորից բացել*

էր բերանը և նայում էր։ Իսկ նրա ընկերները հեռու էին կանգնել...

Հետո, երբ կապտաչյան լրիվ շրջան գործելուց հետո, նորից սլանում էր նրանց կողքից, մոտեցավ այն հորաքույրն ու ձայն տվեց.

— Դե, բավական է...

Կապտաչյան իսկույն դանդաղեցրեց ընթացքը, թեքեց ղեկն ու մոտեցավ։

— Ինչն է ուզում, որ քշեմ, մայրիկ, — ասաց նա հորաքրոջը։

— Իսկ դու մի՛ շահագործիր նրա համբերությունը։ Հասկացա՞ր։

— Հասկացա, մայրիկ։

Տղան զարմացավ։ Ուրեմն այդ հորաքույրը կապտաչյայի մայրի՞կն էր։ Ահա թե ինչու նրանք այնքա՛ն նման էին իրար։

Հետո մայրիկը նորից ձայն տվեց.

— Ուշ է արդեն, Վազգեն, գնանք տո՛ւն...

Այս անգամ մոտեցավ այն մյուսը, որը վայր էր գցել տղային և որին ապտակել էր հորաքույրը։

— Իսկ Վազգենը ձեր ի՞նչն է, հորաքույր, — հարցրեց տղան զարմացած։

Հորաքույրը ժպտաց.

— Վազգենն էլ իմ տղան է...

Տղան ուղղակի ապշել էր։ Նայում էր Վազգենին՝ իրեն վայր գցող Վազգենին... և զարմանալի բան. կարծես թե ավելի էին իրարից հեռացել նրա ատամները, բայց այլևս չարություն չկար նրա ատամների արանքներում... Տղան ուրախացավ. «Ուրեմն տատիկը ճիշտ էր. այն մարդիկ, որոնց ատամներն իրարից հեռու են լինում, բարի սիրտ են ունենում»...

— Ուրեմն Վազգենը քո եղբա՞յրն է, — հարցրեց տղան իր նոր կապտաչյա ու ոսկեհեր բարեկամին։

— Այո, — ասաց նա։

Բոլորն էլ ժպտադեմ իրար էին նայում...

— Իսկ դու եղբայր չունե՞ս, — հարցրեց տղայի հորաքույրը։

— Ունեմ, — ասաց տղան։

— Բա ինչո՞ւ նրան էլ չես բերում քեզ հետ, — հարցրեց Վազգենը։

— Նա դեռ շա՜տ փոքրիկ է, — պատասխանեց տղան։

— Ինչքա՞ն փոքրիկ, — հարցրեց կապտաչյան։

— Նոր ենք բերել հիվանդանոցից...

Հորաքույրը ժպտաց...

Վազգենն էլ ժպտաց...

Վազգենի կապտաչյա եղբայրն էլ ժպտաց...

Տղան էլ ժպտաց...

— Իսկ որտե՞ղ է ձեր տունը, — հարցրեց հորաքույրը։

Տղան ասաց, թե որտեղ է իրենց տունը։ Պարզվեց, որ նրանք հարևաններ են։ Եվ սկսեցին քայլել դեպի տուն։

Արեգակը թաքնվեց ծառերի հետևում։ Բայց ասֆալտե կլոր հրապարակի վրա դեռ աղմուկ էր ու ճիչ։ Երկինքն ավելի մուգ-կապույտ դարձավ, և այդ մուգ-կապույտի վրա էլ՝ ծիծեռնակներն էին «հեծանիվ քշում»...

Միայն Վազգենի ընկերներն էին հիասթափված կանգնել։ Երկուսն էլ հիասթափվել էին. այնպե՜ս էին հիասթափվել Վազգենից...

# Անթառամ այգի

ԱԼԲԵՐՏ ՇԱՀԱԶԻԶՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Նրանք երկուսով էին՝ մայր ու որդի: Ապրում էին գյուղում: Դասերից հետո տղան օգնում էր մորը տընտեսության մեջ, իսկ երբ գալիս էին արձակուրդի օրերը, նրա հետ միասին աշխատում էր կոլտնտեսության այգում:

Ապրում էին սիրով, իրարից անբաժան, հարազատ հողում, հայրենի կտուրի տակ: Բայց տղա՞ն հավի ճուտ չէ, ոտը կապես թելով, բակից դուրս չթողնես: Նա մեծացել էր, հասակ նետել, ավարտել գյուղի դպրոցը և ուզում էր անպայման ուսումը շարունակել քաղաքում: Մայրը չէր կարող քար դնել միակ որդու ճանապարհին: Լավ կլիներ, որ նա մնար գյուղում, իր պապենական հող ու ջրի վրա, բայց եթե ուսման ծարավի է, թող գնա, ինքը կտա իր մայրական օրհնությունը: Որդու համար էլ դժվար էր մորից բաժանվել: Նա մի օրից ավել չէր հեռացել տանից. դպրոցի թատերական խմբի հետ երբեմն գնում էր շրջանի հեռավոր մի գյուղ ներկայացում տալու, գիշերում էին այնտեղ և հաջորդ օրը վերադառնում տուն: Ահա և բոլորը: Իսկ հիմա, ամիսներով, գուցե և տարով չէին տեսնելու իրար: Բայց ուրիշ ելք չէր մնում տղային, եթե ոչ հրաժեշտ տալ մորը, խոստանալ, որ իրեն լավ կպահի, կհետևի

իր առողջությանը, շուտ-շուտ նամակ կգրի և ուսումն ավարտելուն պես կվերադառնա գյուղ: Ճիշտ այդպես էլ արեց նա: Օգոստոսյան մի օր, թևի տակ դրեց իր դասագրքերի կապոցը, ձեռքն առավ ճամպրուկը, ուր մայրը նրա շորերն էր դասավորել ու ճամփի հաց դրել, և հրաժեշտ տալով իր հարազատներին ու ծննդավայրին, բռնեց Երևան տանող ճանապարհը: Ավտոմեքենան հազվադեպ բան էր այն ժամանակներում, իսկ կառքի փող չուներ, ուստի իր նման մի երկու ընկերների հետ, որոնք նույնպես քաղաք էին գնում «բախտ» որոնելու, քանիհինգ կիլոմետր ճանապարհը գնացին ոտքով՝ ունեցած-չունեցածը գյուղացիներից մեկի ավանակին բարձած: Կոշիկները չմաշվելու համար նրանք գնում էին ոտաբոբիկ, իրենց հետևից թողնելով տաք փոշու մի փոքր ամպ:

Գյուղի սահմանը Քասախի հին կամուրջն էր, որի վրայով դարեր էին անցել, և դիմացել էր շատ արհավիրքների: Նրանք հրաժեշտ տվին կամուրջից ոչ հեռու գտնվող «Ավագագյուղին», վերջին անգամ նետվելով նրա պաղպաջուն ջրերի մեջ: Այնտեղ, ուր մի օր Շապուհ վարժապետի սաների հետ լողացել էր Երևանի դպրոցների տեսուչ Խաչատուր Աբովյանը: Ուր մի օր, ծննդավայրը թողնելուց առաջ, լողացել էր բանաստեղծ Սմբատ Շահազիզը և մեկնել Մոսկվա սովորելու: Ուր մի օր, հարազատ գյուղից բաժանվելով, լողացել էր Պերճ Պռոշյանը...

Սովորողի ճանապարհին քար չեն գցի: Բայց մայրը երկար չդիմացավ: Որդին դեռ նոր էր ընդունվել սովորելու, երբ թողեց ամեն ինչ ու եկավ քաղաք, անցավ աշխատանքի կաթի գործարանում, խնամք տարավ որդուն, օգնեց, որ նա բարձրագույն կրթություն ստանա և միասին վերադառնան գյուղ: Բայց տղան դեռ չէր թողել ուսանողական նստարանը, երբ սկսվեց Հայրենական մեծ պատերազմը...

— Ի՞նչ տեսար աշխարհում, զավակս: Առաջին համաշխարհային պատերազմին ծնվեցիր, երկրորդին՝ կինվոր ես գնում: Բարի վերադարձ, քեզ էլ, քո ընկերներին էլ,— աչքերը սրբելով մաղթեց նա Երևանի կայարանում ճանապարհելիս:

Նա ողջ պատերազմի ընթացքում աշխատեց կաթի գործարանում: Շատ անգամ տուն չէր գալիս: Մնում էր ընկերների հետ միասին ռազմաճակատի համար արտահերթ պատվերներ կատարելու: Աշխատում էր անձնվիրաբար, արժանանալով շնորհակալության ու խրախուսանքի: Բայց չնայած այդ բոլորին, նա միայն արտահագուստի մեջ էր բանվորուհի, իսկ հոգու խորքում, իր ողջ էությամբ մնացել էր հող ու ջրին հավատարիմ նույն գեղջկուհին: Եվ երբ պատերազմի հաղթական ավարտից հետո տուն վերադարձան աշխատող ձեռքերը, մայրը հրաժեշտ տվեց գործարանին, իր տեղը զիջելով դեռ զինվորական համազգեստը չփոխած երիտասարդներին:

Հասունացած ու մեծացած, ողջ և առողջ տուն վերադարձավ որդին: Նա շարունակեց կիսատ թողած ուսումը, հետո ընտանիք կազմեց, և մայրը, որ արդեն սկսել էր ձանձրանալ ու հոգնել քաղաքի կյանքից, աշխուժացավ միանգամից, երբ նրա վրա ընկավ թոռների հոգսը: Չէ՞ որ նա այժմ Մարո տատիկ էր: Հրաչը, Մարիետան և Պարույրը նրա թևերի վրա մեծացան: Բայց ահա, երբ վերջինս սկսեց արդեն դպրոց հաճախել, տատի համար աշխարհը մի տեսակ դատարկվեց: Եվ մի օր էլ նա թախծոտ ասաց.

— Երեխաներին թևավորեցի, հիմա էլ անելիք չունեմ, քաղաքում սիրտս նեղվում է, երկրի մեռնելուս ժամանակն է...

— Ի՞նչ ես ասում, ա՛յ մեր,— աշխատելով նրա ասածը կատակի տալ, ծիծաղեց որդին,— դեռ նրանք պիտի սովորեն, կյանք մտնեն, տունուտեղ դնեն, առանց քեզ յոլա չեն գնա, փոխիր մտադրությունդ:

Տատը հառաչեց ու լռեց: Օրեցօր նա տխրում էր ու ծերանում: Սկսել էր ավելի հաճախ բարկանալ: Բռնկվում էր մի չնչին պատճառից: Թե ի՞նչ էր կատարվում տատի հետ, դժվար չէր հասկանալ: Նա խորը, շատ խորն էր կարոտել գյուղին, Քասախ գետին, կմրուտ այգիներին, հանդ ու քարին: Չէ՞ որ այնտեղ էր ծնվել, իր երիտասարդությունը այնտեղ անցկացրել: Ի՞նչ կարող ես ասել: Թեկուզ հարազատ երկնքի տակ, ամեն հող ծննդավայրի համը չի տա, ամեն ծաղիկ՝ նրա ծաղկի բույրը:

Շքեղ ու սիրուն է Երևանը: Նրանով բոլորն են պարծենում, գուցե ամենից շատ հենց ինքը՝ գյուղին կարոտող այս ծեր կինը: Չէ՞ որ նա տեսել է հին օրերի մայրաքաղաքը, որ իր կավածեփ, մեկ-երկու հարկանի տներով ավելի շուտ նման էր մի մեծ գյուղի, քան թե քաղաքի:

Բայց երբ մնում էր մենակ, ինքն իր մտքերի հետ, քաղաքը նրան մի ոսկե վանդակ էր թվում, իսկ ինքը նրա մեջ մի թռչուն, որտեղից դուրս գալու ելք է որոնում ու չի գտնում... Բայց ինչո՞ւ միայն նա: Նրա պատմածներով թոռները նույնպես իրենց սրտին մոտ ու հարազատ կգացին, սիրեցին հայրենի գյուղը: Իսկ որդին՝ միշտ էր կարոտում: Օրվա մեջ, երբ ազատ ժամանակ էր լինում երազելու, նա մտովի թափառում էր հարազատ վայրերում, որի հետ կապված էր մանկության օրերի նվիրական հուշերով:

Ահա թե ինչու, մեծ եղավ նրանց ուրախությունը, երբ Արզնի-Շամիրամ ջրանցքը ջուր հասցրեց Քասախի ձախափնյա անապատ հողերին: Գյուղից և ուրիշ տեղերից շատ տնտեսություններ տեղափոխվեցին ձախ ափ և այնտեղ, հին ու նոր կամուրջների միջև ընկած հողաշերտերում, Երևան տանող ճանապարհի մոտ սկսեցին բնակություն հաստատել, իսկ ավելի հեռվում, հիմնվեցին այգեգործական սովխոզներ: Ողջ դաշտավայրը՝ հազարավոր հեկտար խոպան հող, որ ընկած էր Արայի լեռան, Քասախ գետի, Էջմիածնի ու Երևանի միջև, ծածկվում է խաղողի ու մրգի այգիներով: Նոր կյանք ու շունչ առած հողը սկսեց փոխել

դաշտի տխուր դեմքը՝ պարզևելով նրան մշտադալար ժպիտ:

— Ամեն անգամ, երբ գյուղ եմ գնում, հին կամուրջը կարծես ասում է՝ ինչո՞ւ գնացիր, իսկ նորը հարցնում է՝ ե՞րբ ես վերադառնալու:— Կգնամ, և մի օր էլ դուք կգաք,— ոգևորված ու եռանդուն ասաց նա թոռներին, փեշը թափ տվեց ու գնաց...



Այդպես է: Հայրենի օջախի կարոտի ճամփան ոչ մի արգելք չի կարող փակել: Տնեցիներից ոչ մեկը չհամարձակվեց նրան ետ պահել այդ քայլից: Եղան մարդիկ, որոնք փորձեցին համոզել, որ թողնի այդ մտադրությունը:

— Այ կնիկ, դու նոր ջահել չես, ո՞վ է քո գործ անողը, որ գնում ես օձ ու կարիճների բնի վրա նոր տունուտեղ դնես, ծառ ու տունկ աճեցնես, հանգիստ կյանքդ թողնում, օր-ծերության գնում ես մշակություն անես: Կեր, խմիր, բերանդ սրբիր նստիր քո դռան առաջ:

Տատը չէր բարկանում: Լսում էր նրանց համբերատար, կիսահեգնական ժպիտը դեմքին, մինչև որ կավարտեին իրենց խոսքը: Ապա համոզող տոնով ասում էր նրանց.

— Ես կսկսեմ, թոռներս կշարունակեն այս լավ գործը: Մարդը ստեղծված է բարի գործերի համար: Ծուլությունը ողջ մարդու գերեզմանն է: Հողը ուժ կտա ինձ, աշխատանքը ամեն դժվարություն կհաղթի:

Առանց տատանվելու նա տեղափոխվեց գյուղ: Ձորի մյուս ափին, իր բարեկամներից մեկի տանը ժամանակավորապես տեղավորվեց, մինչև որ, ինչպես ինքն էր ասում, կծխացներ իր օջախը:

Աշնանային արևոտ ու տաք օրեր էին: Մի կիրակի օր տնեցիները ավտոբուսից իջան Քասախի ձախ ափին և ուղիղ գնացին դեպի «տատի հողամասը»: Դա մարդու ոտք չկոխած, «մարդու ձեռք չկպած» դարավոր խոպան, քարքարոտ ու գորշ դաշտի մի կտոր էր:

— Ձեր ոտնամուտը բարի լինի, սկսենք, և հողը մեր չարչարանքը վուր չի կորցնի,— ասաց նա տնեցիներին և որպես գործնական կին, իսկույն աշխատանք հանձնարարեց բոլորին:

Ողջ ընտանիքով մի մարդու սյես կպան գործի: Այդ ժամանակ տատի թոռներից մեկը՝ Հրաչը, տասնհինգ տարեկան էր, Մարիետան՝ տասներկու, իսկ Պարույրը՝ ութ: Դժվար էր: Անսովոր էին նրանք ծանր ֆիզիկական աշխատանքի, բայց ոգևորությունն այնքան բարձր էր, որ տատի գլխավորությամբ ոչ թե քարեր, այլ թվում էր, թե սարեր կարող էին շրջել:

Արդեն սովորություն դարձավ: Ամեն շաբաթ, կիրակի առաջինը երեխաներն էին ասում.

— Գնանք հողամաս՝ տատին օգնելու:

Գնում էին ու չէին կարողանում զսպել իրենց զարմանքն ու ուրախությունը:

— Տատ, էսքան գործը դու մենակ ո՞նց ես արել,— ջերմ փաղաքշանքով հարցնում էր Հրաչն ու գրկում նրա նիհար ուսերը:

— Ձեզ համար էլ եմ բաժին թողել,— մանրիկ ծիծաղելով ասում էր տատը և առանց ժամանակ կորցնելու մրցության էր կանչում,— մի եկեք տեսնենք կարո՞ղ ենք էս քարը տեղից շարժել:

Այդպես քրտնամխած աշխատում էին մինչև մայրամուտ, հետո շուտ նստում էին իրիկնահացի և շուտ էլ անկողին մտնում: Հոգնած ու վաստակած մարդու ույածն էլ հենց այդ է: Քնում էին անույշ:

Շուտով հողամասի ամբողջ երկարությամբ գոյացավ քարակույտի մի հսկա թումբ, որ կլիներ երեսունքառասուն ավտոմեքենա: Այդ ամենը տատն էր դուրս թափել՝ որը ձեռքով, որը փեշով և որն էլ դույլերով. Հարևանները մեծ գովեստով էին խոսում այս անդուլ և աշխատանքի բուռն սիրահար կնոջ մասին: Նա բարի նախանձի օրինակ էր դարձել բոլորին:

Եկավ այն օրը, երբ ամբողջ հողամասն արդեն

մաքրված էր քարերից: Տատը էլ չհամբերեց մինչև գարուն, որ ջուրը մոտակա սովխոզից հասցնեն ձախափնյակ: Նա որոշեց սկսել այգետունկը:

— Անջուր տնկի ո՞վ է տեսել,— զարմացած բացականչեց Պարույրը, բայց տատի սաստող հայացքին հանդիպելով՝ ձայնն իջեցրեց:

— Տնկողը ջուր էլ կգտնի, ի՞նչ է, գետի ջուրը ցամաքե՞ց: Ավելի լավ է դու հացդ կեր, էն մի կիտուկ քարը երեկ եմ հանել, քիչ-քիչ տար թափիր:

Գետի մասին որ լսեցին, տնեցիները զարմանքով իրար երեսի նայեցին: Ի՞նչ է մտածում տատը, դույլով ջո՞ւր հանել ձորից:

— Ավելի լավ է միրգ չուտել, քան ձորից ջուր բերելով ծառ աճեցնել, ես չեմ անի,— նորից մեջ ընկավ Պարույրը:

— Դու հեշտին ես վազում, ձիավոր մրջյուն, բայց իմացիր, առանց չարչարանքի բարիք չես ստանա: Վախկոտ: Ասում էիր մեծանամ, գնամ խոպան: Ահա խոպանը, դե մշակիր:

Ի՞նչ կարող ես ասել, տատը իրավացի էր: Այստեղ էլ գտնվելով կարելի է մեծ գործ կատարել: Եթե ամեն մի ընտանիք հողի այսքան կտոր խլեր խոպանից, լեռնաստանը հիմա վաղուց բուրաստան էր դարձել:

Տատը կամաց-կամաց սկսեց «բնակելի» դարձնել հողամասը: Սկզբում երևաց խաղողի որթատունկը, հետո՝ բալի, կեռասի բարալիկ տնկիները: Երևացին նաև սանձն ու խնձորը, դեղձն ու սալորը... Մի քանի տնկի ապագա պարտեզի առաջին բնակիչները դարձան: Բայց այդքանին գետից ջուր հասցնելը ուժից վեր բան էր և հարկավոր էր մի ելք որոնել:

Մարո տատը մտածմունքից այդ օրերին թվում էր, թե նիհարել էր ու փոքրացել: Հոգով սակայն նա մնացել էր անընկճելի: Ամեն կերպ նեղ տեղից դուրս գալու ելք էր որոնում: Շրջապատում, որ կողմը նայեիր, տներ էին կառուցում: Շինարարության համար ջուրը նրանք բերել էին տալիս ավտոմեքենայով, լցնում տակառների ու չաների մեջ: Տատն իր համար էլ մեքենայով ջուր պատվիրեց իր և հարևանի համար, որը հարմարություն ուներ նույնիսկ երկու ավտոմեքենա դատարկել տալու:

Իսկ երբ վերջանում էր ջուրը կամ ուշանում էր մեքենան, նա գնում էր հարևաններից դույլով ջուր փոխ առնելու:

— Պստիկներս ծարավից նեղվում են, մի երկու աման ջուր տվեք, մինչև մերը կհասցնեն:

Պատահում էին նաև այնպիսի օրեր, երբ ջրատար մեքենաներ չէին երևում ձախափում: Այդպիսի օրերին տատը դույլն առած գետն էր իջնում ջրի: Խմելու ջուրն էլ էր հեռվից բերվում: Ամենամոտ ծորակը գտնվում էր մեկուկես կիլոմետրի վրա, գետի մյուս ափին: Բայց դա չէր վհատեցնում նորաբնակներին, որոնք մտադրվել էին բնակություն հաստատել այդ ամայի ղռերում: Բոլորն էլ աշխատասեր, արի ու դիմացկուն մարդիկ էին: Նրանք համոզված էին, որ մի քանի տարի հետո, դիմացի ափի պես այս կողմն էլ ծառ ու ծաղկունքով կզարդարվի:

Երբ օրերը սկսեցին ցրտել, տատը հողով ծածկեց որթատունկերը, որ ցրտահար չլինեն, իսկ կրծողներից պաշտպանելու համար նա խսիրով փաթաթեց տնկիների դալար բները: Ձմեռն անցավ անվնաս: Գարունը բացվելուն պես տատն սկսեց իր պարտեզը շենացնել: Ամեն տեղից տնկիներ էր ճարում ու տնկում: Շատ անգամ, երբ ուժը չէր պատում, օգնության էին հասնում հարևանները՝ Արտաշ դային, Վոլոդյան, Արամը: Չէր սպասում, մինչև որ տնեցիները գային: Անհամբեր կին է Մարո տատը: Նա չի սիրում էսօրվա գործը վաղվան թողնել: Չի սիրում որևէ բանով հարևանից ետ մնալ:

Թե խմելու և թե ոռոգելու ջուրը հասավ ձախափնյակ, հ ե շ տ ա ց ա վ մարդկանց գործը: Ավելի արագ թափով սկսեցին տներ կառուցել ու հողը մշակել: Մարո տատի տունն էլ էր կամաց-կամաց բարձրանում: Վարպետը շարում էր պատը, իսկ տնեցիք՝ մեծից փոքրը օգնում էին վարպետին, քար ու շաղախ էին հասցնում: Անտանելի շոգ էր: Մի ստվեր չէիր գտնի թեկուզ գլուխդ պահելու: Ամռան արևը խաշում էր, իսկ գոլ ջուրը խմել չէր լինում:

Հենց պատը սկսեց բարձրանալ, Մարո տատը հրաժարվեց նավթավառից: Ավանդական օջախ սարքեց պատի տակ, և իր տանից սկսեց ծուխ բարձրանալ...





Անցնող գարունների հետ որթատունկն իր կանաչ թևերը փռեց երեկվա խոպանում: Ծառերն սկսեցին թափ տալ իրենց ու ճյուղավորվել: Ամեն գարուն ասես խոսք մեկ արած, ծաղիկը ծաղկին, ծառը ծառին նայելով բացվում են, բռնկվում անկրակ բոցով: Ի՞նչ ասես, որ չկա Մարո տատի պարտեզում, է՛լ տանձ ու խնձոր, է՛լ դեղձ ու ծիրան, է՛լ նուռ, թուզ ու նուշ, է՛լ... էլ ո՞ր մեկն ասես: Օրվա բոլոր ժամերին, երբ էլ գնաք, իր վմրուխտ այգում նա զբաղված է գործով: Հող ու քարի աշխատանքը գրեթե ամբողջովին ավարտում է գարնանը: Մնացած ժամանակ գործը ծառերի հետ է: Ամբողջ օրը ականջն աչքերին, ճյուղ առ ճյուղ տնտըղում է ծառերն ու խաղողի որթատունկերը, հետևում նրանց աճին, հենավորում, նեցուկներ տալիս նրանց տակ, ավելորդ շիվերն ու ճյուղերը հեռացնում:

Հարկավոր է տեսնել, թե ինչպիսի եռանդով ու գործիմացությամբ է նա պայքարում վնասատուների դեմ: Ծանր ապարատը կապում է շալակը և ծառերը թունավոր դեղանյութով սրսկում: Բայց դրանով չի վերջանում բանը: Տերևակալելուց հետո նա այդ բանը կրկնում է յոթ-ութ անգամ, մինչև որ վնասատուները ոչնչանան ու կանգ առնի հիվանդությունը: Դա մի իսկական մենամարտ է, անձնուրաց, հուզիչ պայքար բերքը կորուստից փրկելու համար:

Անցել է հինգ տարի: Չգիտես որ գրողի ծոցն են քաշվել օձերն ու կարիճները: Տատն ասում է, որ մարդու հոտ են առել, քաշվել կորել են ձորը:

Եթե առիթ լինի, իմ պատանի ընթերցողներ, անպայման գնացեք Աշտարակ, իջեք ձախափի նորակառույցները, որ ընկած են հին ու նոր կամուրջների միջև, Երևան տանող ճանապարհի երկարությամբ: Ձեր աչքով տեսեք, ականատես եղեք մարդու և հողի հուզիչ բարեկամությանը, ամենայոր, ստեղծարար աշխատանքի փրկարար ուժին:

Հիմա, երբ գրում եմ այս տողերը, մի պահ թվում է, թե հեքիաթ եմ պատմում:

Գնացեք, տեսեք ձեր աչքով: Չէ՞ որ մի տեսածը հարյուր լսածից լավ է: Իջեք գետափնյա Քասախի փողոցը և կանգ առեք գետի բարձրադիր ափին, ձորակի մոտ, լուսամուտը դեպի Արագածը բացած № 12 տան առաջ: Դռնակից ներս մտեք արևահամ մրգերով բեռնըված կովաշունչ պարտեզը: Մրգերը վայելելով գնացեք ավելի առաջ: Այնտեղ ինչ-որ գործով զբաղված կլինի միջահասակ, ժիր ու արևառ դեմքով փոքրամարմին մի կին, նա հենց ինքը՝ Մարո տատն է, որի յոթանասուն տարին կլրանա եկող տարի հունվարի 6-ին: Բայց նա ժամանակ չունի այդ մասին մտածելու:

Երբ հոգնում է ֆիզիկական աշխատանքից, գրիչը ձեռքն է առնում ու շարունակում իր հիշողությունների գիրքը: Նա շատ բան ունի պատմելու աշխարհին: Խնդրեցեք, ձեզ կպատմի Աշտարակի անցյալի մասին, և չեք ձանձրանա լսելուց: Իսկ եթե դուք նրան ոչ տանը գտնեք և ոչ էլ պարտեզում, ապա «բաղչի գլխին» հարևան Անահիտի հետ զրուցելիս կլինի և մի կողմից էլ աչքը ճանապարհին՝ թե Երևանից այսօր ով է գալու իր մոտ: Նա սրտատրոփ սպասում է իր ավագ թոռանը՝ Հրաչին: Տղան նավաստի է Սևծովյան նավատորմում: Գրել է, որ շուտով արձակուրդ է գալու, և տատը նրա ճանապարհին է պահում: Մարիետան ինժեներ է դառնալու, սովորում է պոլիտեխնիկ ինստիտուտում: Պարույրը՝ իններորդ դասարանցի է արդեն և լավ ջութակ է նվագում... Մի խոսքով, ամեն ինչ տատի համար լավ է աշխարհում, քանի որ ոչ միայն կյանք է պարգևել նրանց ու պաշտպանել, այլև, չնայած պատկառելի տարիքին, իր ծննդավայրում ձեռքերի ուժով խլել է խոպանից մի կտոր, դարձրել անթառամ այգի, անթառամ պահելով նաև իր անունն ու հիշատակը:

Մարո տատը զրուցում է ու աչքի պոչով հետևում ճանապարհին: Օրը շաբաթ է: Ուր որ է, իրար հետևից ավտոբուսից կիջնեն տնեցիները և, թեկուզ մեծացած, երեխաների պես թոռները վազեվազ կընկնեն նրա գիրկը.

— Տա՜տ ջան, կարոտել էինք, ինչքա՞ն լավն ես դու, տա՛տ ջան;

# Խոզն ու սագը



ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ

*(Ժողովրդական)*

Խոզն ու սագը գետափին
Մի նավ գտան իրար հետ.
Խոզը կանգնեց ղեկի մոտ,
Սագը դարձավ նավապետ։

Եվ երկուսով սահեցին
Վարար գետով դեպի ցած.
Հանկարծ հեռվում, ամպի տակ
Մի մեծ ջրվեժ երևաց։

— Թեքիր ղեկը,— սագն ասաց,—
Տես, նավն ու՞ր է ընթանում։
— Ո՛չ,— համառեց խոզն իսկույն,—
Նավն իր ճամփով եմ տանում։

Ջրվեժն արդեն շատ էր մոտ.
— Թեքիր ղեկը,— սագն ասաց։
— Ո՛չ,— համառեց խոզն էլի.
Նավը տարավ սրընթաց։

Ջրվեժի մոտ սագն արագ
Թևին տվեց ու թռավ,
Իսկ խոզն ընկավ ժայռից ցած,
Արդար պատիժը առավ։

Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

# ՄԵՐ ԲԱԿԻ ՉԵՄՊԻՈՆԸ

ԱԼԲԵՐՏ ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ

Ես քնկոտ տղա էի։ Լույսը բացվում էր, իսկ ես դեռ երազներ էի տեսնում։ Իբր թե մեր բակի Սամվելիկը կռվում էր ինձ հետ։ Ես խուսափում էի նրա հարվածից ու, շըրխկ, այնպես էի հասցնում կզակի տակ, որ նա ասում էր. «Վա՜յ, մամա ջան, գլուխս կտրեցին»։ Իսկ երբ արթնանում էի, ափսոսում էի, որ երազում եմ տեսել։ Ախր, Սամվելիկը միշտ ինձ ծեծում էր, ու ես վազելով՝ մայրիկիս փեշն էի բռնում։ Մայրս դուրս էր գալիս տնից, բարկանում էր Սամվելիկի վրա։

— Ի՞նչ ես քեզ չեմպիոնի տեղ դնում։ Ուզու՞մ ես կռվել, կռվիր Զալիկի հետ։ Իսկ փոքր երեխաների հետ դու գործ չունես։

Ես սրբում էի արցունքներս ու մոտենալով Սամվելիկին՝ հպարտ-հպարտ ասում էի.

— Դե, կռվիր է՛լի, կռվի՛ր Զալիկի հետ։




Ա. ՄԻԼՆ
(Անգլիացի գրող)

Ա՛յ թե լավ բան կլինի, որ
Դառնամ հանկարծ ես թագավոր...
Նախ՝ իմ քեֆին կվազվզեմ
Անձրևի տակ ես անպատճառ:
Կլվացվեմ՝ ինչպես ուզեմ,
Ի՜նչ խոզանակ կամ ի՜նչ օճառ:
Հետո պառկած խոտերի մեջ
Ես մուրաբա կուտեմ անվերջ:
Իմ ծննդին կասեմ՝ հյուր գա
Մեզ մոտ նաև փիղը հսկա:
Ու միշտ շվի ես կփչեմ
Իմ պալատում կախարդական:
Ա՜խ, երանի արքա լինեմ
Թեկուզ մի օր կամ մի վայրկյան:

Ռուսերենից թարգմ. Ա. ՄԿՐՏՉՅԱՆ

## ԳՆԴԱԿԸ

Ս. ՄԱՐՇԱԿ

Դու,
Իմ սիրուն,
Իմ թռվռուն,
Իմ լավ
Գնդակ:
Ի՞նչ ես թռչում,
Ջե՞ս ամաչում,
Ես չեմ անում
Քեզ հետ կատակ:
Ծիածանի
Գույներ առել
Ու թռչունի
Թևեր դառել,
Թռչկոտում ես
Ու վազվզում,
Ինչ անում եմ՝
Քեզ չեմ հասնում:
Ես
Քեզ
Ջեռքով
Հարվածեցի,
Դու
Վեր թռար,
Հետո ընկար,
Նորից վերև,
Նորից ներքև:
Տասնհինգ անգամ
Ետ ու առաջ:
Անկյուն մտար,
Թե՝ արի տար:
Հետո ձախ, աջ,
Ու միշտ առաջ:
Ի՜նչ արեցիր,
Տես, քո գլխին
Ի՜նչ բերեցիր:
Թռար հեռու,
Ջհարցրիր
Քար ու առու,
Ի՜նքդ մտար
Բանջարանոց,
Ելար
Փողոց:
Գլորվեցիր,
Տե՜ս, քո գլխին,
Ի՜նչ բերեցիր:
Ընկար հսկա
Անիվի տակ
Ու պայթեցիր:
Ջլսեցիր
Դու ինձ,
Թռա՜ր,
Դե, հիմա տե՛ս,
Թե ի՜նչ
Դառար:

Թարգմանեց Ն. ԱԽԱԲԵԼՅԱՆԸ

— Բոլորից հետ էլ կկռվեմ: Բայց Զալիկի հետ դուք կռվեք...

Ճիշտն ասած, բոլորս էլ վախենում էինք Զալիկից: Ես էլ էի վախենում: Հենց որ Զալիկը դուրս էր գալիս բակ, բոլոր երեխաները փախչում էին իրենց տները և պատուհաններից նայում էին, թե նա ում հետ է կռվելու, ում է արյունոտելու, ով է մյուս օրը վիրակապերով բակ դուրս գալու: Մեր մայրիկներն ու տատիկները մեզ միշտ ասում էին.

— Գործ չունենք Զալիկի հետ: Շատ անկարգ աքաղաղ է, ոչ մի բան չի հասկանում:

Բայց Զալիկը շատ բան էր հասկանում: Նախ՝ առավոտյան ուղիղ ժամը վեցին վեր էր կենում, բարձրանում շենքի տանիքը և երկար-երկար կանչում.

— Ծուղրուղո՜ւ...

Երբ տեսնում էր, որ ոչ ոք տներից դուրս չի գալիս, բարկանում էր.

— Ծուղրուղո՜ւ, ծուղրուղո՜ւ...

Բոլորն արթնանում էին: Ես էլ էի արթնանում՝ երազս կիսատ թողած: Տեսնում էի, թե ինչպես Զալիկը գլխի ընկնելով, որ մեր բակի բնակիչներն արթնացել են, գնում էր հարևան բակը՝ այնտեղ էլ ծուղրուղու կանչելու: Հետո նորից գալիս

էր մեզ մոտ, համոզվում, որ բոլորս արդեն ոտքի վրա ենք, գնում էր դեպի իր բույնը։ Իսկ այնտեղ արդեն Շողակաթ տատիկը գարի էր լցրել։ Զալիկն հանգիստ կտցահարում էր գարին, ջուր էր խմում մի կոտրած ամանից ու բարձրանում էր այգու ցանկապատին։ Այնտեղից սկսում էր նայել բակի անցուդարձին, հավերի քուջուջ անելուն, երեխաների խաղին, տանտիկինների լվացքին, փոստատարի պայուսակին...

Եթե որևէ մեկը հավերին ասում էր՝ քշա՛, Զալիկը թռչում էր ցանկապատի վրայից ու



Նկ. ԼՈՒՍԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

ընկնում հավի ու «քշա» անողի միջև։ Նրա կատարը ցցվում էր, թևերն ուռչում էին, աչքերն արագորեն պտտվում էին կտուցի վերևում, հետո Զալիկը կամաց-կամաց, սպառնալի մոտենում էր հակառակորդին, Եթե նա չէր փախչում, Զալիկը վրա էր պըրծնում հանկարծ, կտցում էր թևը, վիզը, կուրծքը, փախցնում էր իր դիմաց կանգնածին։ Հարևանները շատ էին բողոքում Շողակաթ տատիկին, որ մոտծի Զալիկի մասին։ Բայց Շողակաթ տատիկն ասում էր.

— Քա՛, աքաղաղից կվախենա՞ն... Ինձնու՞ ինձ ոչ մի բան չի անում։

Ո՞վ կարող էր Զալիկի հախից գալ։ Ոչ մեկը։ Մի անգամ ռազմագիտության դասատու ընկեր Բեժանյանն ուզեց «տիր» հրացանով Զալիկին խփել, բայց Զալիկն այնպե՛ս ծղրտաց, այնպե՛ս փախավ... Բոլորս էլ իմացանք, որ նա ամեն ինչ լավ է հասկանում։

* * *

Մի անգամ Սամվելիկենց սագերից մեկը հարձակվեց Անուշիկի վրա։ Անուշիկը փոքրիկ է, նրան չեք ճանաչում։ Սպիտակ ժապավեններ ունի, աչքերն էլ՝ կապույտ-կապույտ... Սագը վիզը երկարացրած, մեծ-մեծ քայլերով հասավ Անուշիկին, ուզեց ժապավենը պոկել։ Անուշիկը ճչաց ու փախավ։ Սագն ընկավ նրա հետևից։ Մենք ուզում էինք վազել օգնության, բայց հանկարծ տեսանք Զալիկին, որ թևերը լայն բացած, ցանկապատի վրայից ցած թռավ, ընկավ Անուշիկի և սագի արանքը։ Զալիկը նորից կատարն ուռեցրեց, թռավ սագի վրա ու սկսեց կտցահարել նրա գլուխը, վիզը, մեջքը։ Սագն այս ու այն կողմ ընկավ, իսկ Զալիկը դեռ

շարունակում էր կտցահարել։ Անուշիկը բարձրացավ պատշգամբ և սկսեց ոգևորվել.

— Ա՛յ, այդպես խփի՛ր, Զալիկ ջան, խփի՛ր, խփի՛ր ուժեղ...

Զալիկը կարծես հասկացավ Անուշիկի խոսքերը, սկսեց ավելի ուժեղ կտցահարել։ Մենք ուրախությունից թռչկոտում էինք. աքաղաղի ու սագի կռիվ չէինք տեսել։

Սամվելիկը քիչ էր մնում լաց լիներ։ Ախր, Զալիկը իրենց սագին ուզում էր սպանել... Մեկ էլ հանկարծ Սամվելիկը վազեց դեպի իրենց սագը, ուզում էր նրան փրկել Զալիկի հարվածներից, բայց տեսեք, թե հետո ինչ եղավ...

Զալիկը թողեց սագին։ Նայեց Սամվելիկին խոժոռ-խոժոռ, կատարն ավելի ցցվեց, մեջքի փետուրներն ուռան։ Սամվելիկը տեսավ, որ սագը փախավ և ազատվեց, ուզեց ետ դառնալ։ Բայց Զալիկը հարձակվեց Սամվելիկի վրա։ Թևերը թափահարելով՝ պտտվեց Սամվելիկի շուրջը, կտցեց մեջքը, հետո թռավ ուսին, կտցեց վիզը, հետո...

Սամվելիկն սկսեց պաշտպանվել։ Նա թևերն աջ ու ձախ էր գցում, որ քշի աքաղաղին, բայց Զալիկն այնպես էր կտցում, այնպես էր կտցում, որ Սամվելիկը չէր կարողանում աչքերը բացել... Սամվելիկի հոնքից արյուն եկավ, սպիտակ վերնաշապիկը պատռվեց, աչքերից արցունք հոսեց...

Հանկարծ բակում հայտնվեց Շողակաթ տատիկը, նա ձեռքի զամբյուղը վար դրեց ու վազեց դեպի կռվողները։ Զալիկն զգաց, որ տատիկը բարկացել է, թռավ ցանկապատի վրա ու բարձր կանչեց.

— Ծուղրուղո՜ւ...

Սամվելիկը լաց լինելով եկավ մեզ մոտ։ Ուզում էինք նրան որևէ բանով օգնել, բայց ի՞նչ կարող էինք անել։ Միայն Վրեժն իր թաշկինակը տվեց նրան և ասաց.

— Որ կռվել չգիտես, ինչո՞ւ ես կռվում։

Մենք տխուր էինք, որ աքաղաղը արյունոտել է մեր ընկերոջը։ Բայց ուրախացանք, որ Սամվելիկն այլևս չի պարծենա, թե ինքը մեր բակի չեմպիոնն է։

Այդ օրվանից մեր բակի չեմպիոնը դարձավ Շողակաթ տատիկի Զալիկ աքաղաղը։



ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Հերթական երկարատև արշավից արթնանալուց հետո նավապետի սիրտը ավելի էր ճմլվում տարօրինակ մի զգացողությունից։ Նա դարձել էր անհամբեր։ Նույնիսկ՝ նյարդային։ Իսկ նրա ուղեկիցները՝ Մասան ու Նաամը, անհանգստանում էին, սակայն առանց փորձելու որևէ ակնարկ անել այդ մասին։

Վերջերս նավապետը ժամերով նստում էր խցիկի ամբողջ պատն զբաղեցնող էկրանի դիմաց։ Էկրանի վրա իրար էին հաջորդում գունավոր, ինչ-որ չափով հարազատ, առավել՝ օտարացած, սակայն բոլոր դեպքերում էլ հուզող և նույնիսկ հոգեմաշ պատկերները։ Դրանք երկրային հինավուրց պատկերներ էին, որոնք տասնամյակներ շարունակ իր հիշողության մեջ պահպանում էր տիեզերանավի ուղեղը։

Մասա, — հարցնում էր նավապետը, — մենք արդեն քանի՞ տարի ու մոլորակ ենք այցելել։

Սա ևս նավապետի տարօրինակություններից մեկն էր։ Նա շատ լավ գիտեր, թե քանի տարի ու մոլորակ են այցելել։ Բայց Մասան հնազանդվելով կանոնադրության հրահանգներին, անվրդով պատասխանում էր.

— Չորս տարի և ինը մոլորակ, նավապետ։

— Եվ դեռ որքա՞ն պիտի շրջենք։

Ծրագրում կա ևս մեկ տարի, — պատասխանում էր Մասան։ — Եվ վայրէջք կգործենք երկու կամ երեք մոլորակի վրա։

Մասա, դու դեռ չե՞ս ձանձրացել։

— Ոչ, նավապետ, — պատասխանում էր Մասան, քանի որ կանոնադրության հարյուր իններորդ հրահանգը ստիպում էր նրան պատասխանել նավապետին, որքան էլ հարցը անհեթեթ թվար։

— Նաամ, իսկ դո՞ւ...

— Այո, նավապետ, ձանձրանում եմ, — պատասխանում էր Նաամը, քանի որ կանոնադրության նույն կետի երկրորդ ենթաբաժինը ստիպում էր նավապետի անհեթեթ թվացող հարցին երկուսով միևնույն պատասխանը չտալ։ Մասաի և Նաամի

համար, իհարկե, ոչ մի նշանակություն չուներ «այո»-ն կամ «ոչ»-ը, քանի որ նրանք չգիտեին նույնիսկ, թե ինչ բան է ձանձրույթը: Իսկ նավապետին միապաղաղ ու միատեսակ պատասխանել չէր կարելի:

Նավապետը միշտ էլ սրտի թրթիռով էր նայում դիտելու մայր մոլորակի հուշ-պատկերները, որտեղ ամեն բան սկզբում իրական էր թվում:

Իրական էին թվում լեռները՝ իրենց խորունկ կիրճերով ու ալպիական խոտաբույսերով ծածկված սարահարթերով, հովիտները՝ իրենց խոնավ ու խելառ աղմուկ-աղաղակով և օդում կախված ծիածանի մողեղներով... Իրականություն այս պատրանքների հետ կային բնության խորհրդավոր ու կախարդական ձայները, որոնք թեև անկապ ու անկախ էին իրարից, սակայն հնչում էին տարօրինակ, անհասկանալի ներդաշնակությամբ ու ռիթմով: Կային խորունկ կիրճերի տամահոտ ու սիզախոտերի գլխապտույտ առաջացնող բույրը: Կար ծաղկադաշտերի երբեմն շնչարգելակող հոտավետությունը: Այս ամենն իրական էր թվում, այս ամենը թրթռացնում և շոյում էին նավապետի տեսողությունը, լսողությունը, հոտառությունը... Սկզբում նրա բոլոր զգայարանները պրկվում էին և որպես իրականություն էին ընկալում խաբկանքը:

Նավապետը վերապրում էր անցյալը, հիշողությունների օվկիանոսում լողում էին աներևակայելի գանձերով բեռնավորված թղթե առագաստանավակներ:

Հետո նավապետը զգում էր ինչ-որ պակաս: Ինչ-որ տեղ պատկերները մնայուն չէին դառնում, ինչ-որ տեղ պատկերները անշոշափելի էին, խաբկանք, ծաղր:

Նավի ուղեղից ծնունդ առնող երկրային պատկերներն ու հուշերը գալիս հանդիպում էին պատնեշի, հետո փշրվում էին, չկարողանալով ճեղքել պատնեշը, իսկ բեկորները ցրվում էին տիեզերքով մեկ: Բեկորները մնում էին այն անկենդան, ամայի մոլորակների վրա, որոնց այցելում էին շրջմոլիկները՝ նավապետը, Մասան ու Նաամը:

Օրինավոր տիեզերագնացներ էին նավապետի ուղեկիցները: Նրանց հուզում էին միայն իրենց վրա դրված պարտականությունները, մնացյալ ամեն բանի նկատմամբ անտարբեր էին նրանք, որովհետև վայրկյաններն ու րոպեները նրանց համար ավելին արժեին, քան սովորական մարդը սովորական պայմաններում կկարողանար գնահատել: Նրանք ունեին մի առավելություն ևս, որը յուրահատուկ է բոլոր անտարբեր մարդկանց. Մասան ու Նաամը երբեք չէին սխալվում: Եվ նավապետն էլ հոգու խորքում գոհ էր նրանց այդ հատկությունից:

Այդ հատկության հետևանքն էր, որ Մասան ու Նաամը ճիշտ ժամանակին արթնացնում էին նավապետին, երբ նա արջաքուն էր մտած լինում մի մոլորակից դեպի մյուսը ձգվող ամբողջ ճանապարհին: Հերթական մոլորակի շրջակայքում հայտնվելուն պես նավապետի օրինավոր ուղեկիցները հրահանգում էին նավի ուղեղին և տաքանում էր սառցե այն միջավայրը, որտեղ ամիսներ ու տարիներ շարունակ քնած էր լինում նավապետը: Արյունը արագացնում էր շրջանառությունը նավապետի երակներում, և նա աչքերը բացում էր վստահ լինելով, որ իր երկարատև արջաքնի ընթացքում տիեզերանավի հետ որևէ արտակարգ բան չի պատահել:

Նրանց այդ հատկության հետևանքն էր նաև, որ մինչև այժմ այցելած մոլորակներից ոչ մեկում տեղի չունեցավ մի այնպիսի պատահար, որպիսին հազվադեպ չէ տիեզերական շրջմոլիկների ճանապարհորդությունների ժամանակ, երբ անձնախմբի անդամներից մեկը կամ երբեմն նույնիսկ մինչև վերջին մարդը իրենց հավիտենական հանգիստն են առնում օտար աշխարհներում:

— Նավապետ, վայրէջքն սկսում ենք, — մի օր էլ հայտնեց Նաամը:

— Հետախույզներ ուղարկե՞լ ենք:

— Այո, նավապետ:

— Ինչպիսի՞ տվյալներ են բերել մոլորակի մասին, — հարցրեց նավապետը:

— Տվյալները դեռ չեն վերլուծված:

Նավապետը միացրեց էկրանը: Գունազեղ, ասես իրական բնաշխարհը դարձյալ բորբոքեց նրա երևակայությունը, և դարձյալ նավապետը զգաց, թե ինչպես մի անշոշափելի ձեռք սեղմեց իր սիրտը: Նա մտածեց, որ քիչ է մնացել, մի քանի տասնյակ տարի ևս, որից մոտ մեկ տարին միայն նա կանցկացնի արթուն վիճակում: Ուրեմն, ոչ թե մի քանի տասնյակ, այլ ընդամենը մոտ մեկ տարի... Մեկ տարի... Եվ նա կբռնի տունդարձի ճամփան: Թող քնի մեջ դարձյալ կանցնեն տասնամյակներ, ու նա, վերջապես, կվերադառնա հարազատ, ոչ մի բանով չփոխարինվող մայր մոլորակը:

Այնտեղ նա անպայման կծաղրի տիեզերանավի ուղեղին, որը միամտորեն կարծում է հիմա, թե իր շնորհիվ է միայն, որ նավապետը կարոտից չի խելագարվում: Նա այնտեղ քրքջալով կհայտնի բոլորի ներկայությամբ, որ ինքը ճանապարհորդելիս ձևացնում էր միայն, թե իրականության տեղ է ընդունում հուշ-պատկերները: Անպայման բոլորի ներկայությամբ. . Նավերի ուղեղները չափազանց կատարելագործված են լոկ հաշվիչ մեքենաներ կոչվելու համար: Նրանք նույնիսկ ինքնասիրություն ունեն: Տարօրինակ է մի քիչ, բայց ունեն, փաստ է: Նավապետը համոզված էր, որ իր այդ հայտարարությունը, այն էլ բոլորի ներկայու-

թյամբ, ահագին վիրավորելու է նավի ուղեղին։ Գուցե կվառվեն նրա ապահովիչները, գուցե և մի քանի հանգույց ինքնանորոգման շարքից դուրս կգան։ Թեկուզ....

— Տվյալները պատրաստ են, նավապետ, — ասաց Նաամը։

— Լսում եմ։

— Մթնոլորտը հարուստ է թթվածնով, — սկսեց թվարկել Նաամը։ — Մակերևույթը լեռնային է։ Կան ջրային ավազաններ, որոնք զբաղեցնում են մոլորակի մակերևույթի կեսը։

Նավապետը անջատեց էկրանն ու սկսեց ետ ու առա՜ջ քայլել խցիկում։ Մասար բազմանշանակ նայեց Նաամին։

— Շարունակիր, — պահանջեց նավապետը։ — Ինչո՞ւ լռեցիր։

— Հարավային կիսագնդի հարթավայրերում հայտնաբերվել է բուսական հարուստ ծածկույթ։

— Վայրէջք կգործենք Հարավային կիսագնդում, — ասաց նավապետը։

— Ոչ, նավապետ, — առարկեց Նաամը։ — Ավելի հարմար է ջրային ավազանը։ Այդ դեպքում ապահով կլինենք ռադիոակտիվ ճառագայթման թեկուզև աննշան քանակությունից։



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

— Վայրէջք կգործենք Հարավային կիսագնդում, կրկնեց նավապետը։

Նրա ուղեկիցները լավ հիշողություն ունեին։ Նրանք անմիջապես վերհիշեցին կանոնադրության համապատասխան հոդվածներն ու նավի ուղեղին հրահանգեցին վայրէջք գործել Հարավային կիսագնդի հարթավայրերից մեկում։

...Նավապետն այլևս չէր կարողանում համբերել։ Նա չուզեց լսել նույնիսկ, որ տիեզերանավից դուրս են գալու ռոբոտները։ Նա մի կողմ նետեց ծանր զրահազգեստը և ոչ մի կերպ չհամաձայնեց հագնել այն, որքան էլ պնդեցին ուղեկիցները։ Անծանոթ մոլորակը հեռու-հեռավոր մի նմանություն ուներ Երկրի հետ, և նավապետը հարազատության քնքուշ մի զգացում էր ապրում։ Նա ժամանակից շուտ դուրս եկավ մանրէազերծման խցիկից, չմտահոգվելով, որ իր հետ տիեզերանավից դուրս կարող է տանել նաև մոլորակի համար վտանգավոր մանրէներ։

Ոտքը մոլորակի վրա դնելուն պես, նավապետն սկսեց վազել հարթավայրով։ Ուղեկիցները ետ մնացին նավապետից, որը քիչ անց անհետացավ խոտաբույսերի թավուտում։

Ուղեկիցները մի պահ շփոթվեցին, բայց կանգ չառան։ Նրանք անսխալ որոշումները կայացնում էին վայրկյանի տասնորդական մասերի ընթացքում։

Հետո նրանք լուռ և զգույշ որոնում էին նավապետին։ Առաջինը Մասար նկատեց նրան ու ձեռքով մոտ կանչեց Նաամին։

Նավապետը փռվել էր գետնին, ափերով տրորում էր հյութեղ, գլխապտույտ առաջացնող բույրով խոտը, դեմքը քսում էր խոնավ հողին։ Ուղեկիցները կանգնել էին նրա գլխավերևը։ Դիտում էին, թե ինչպես է քամու հոսանքը գզգզում ժամանակից շուտ ճերմակող նրա մազերը, նայում էին նրա այտերով գլորվող արցունքի խոշոր կաթիլներին։

Ուղղածիգ խոտից կառչելով՝ բարձրանում էր կարմրա-կապույտ խալերով մի գառնիկ: Թևերը բացեց, ուզում էր թռչել հեռանալ, բայց, երևի, մտափոխվեց ու, շարունակելով իր ճանապարհը, հայտնվեց Նավապետի դաստակին:

— Նավապետ, — հանկարծ խոսեց Մասը: Բայց նավապետը չէր լսում կամ չէր կամենում լսել նրան: — Նավապետ, կանոնադրության երկու հարյուր իննսունվեցերորդ հրահանգում ասված է, որ... եթե նավապետը թույլ է տալիս նախորդ երկու հարյուր իննսունհինգ հրահանգներից իրեն վերաբերող որևէ հրահանգի խախտում, ապա ուղեկիցները ազատավոր են...»

Նավապետը հոգնած աչքերով ծածկեց դեմքն ու մատների արանքով նայեց ուղեկիցներին: Նա շնչում էր հողի ու խոտի բույրը, և նրա հայացքը լի էր աղերսով:

— Թողե՛ք ինձ, — բղավեց նա անմարդկային մի ձայնով, երբ ուղեկիցները նրան պոկեցին խոտով գետնից: — Թողե՛ք... Դուք ի՞նչ եք հասկանում: Ինչ եք հասկանում... Մա՛ս, քո որոշումը անարդի է, լսու՞մ ես, սխա՛լ է, սխա՛լ... Ի՞նչ է, ուզում ես, որ քեզ վերակառուցմա՞ն ուղարկեմ:

— Նավապե՛տ, — անվրդով ձայնով ընկերոջ փոխարեն ասաց Նաամը, — մենք երբեք չենք սխալվում: Այդ մարդկանց է յուրահատուկ սխալները: Դու վիրավորում ես մեզ, նավապետ:

Ուղեկիցները նրան փակեցին խցիկում:

Նավապետը ևս հիշում էր հրահանգները և համոզված էր, որ ուղեկիցներն իրեն այլևս թույլ չեն տա դուրս գալու: Ոչ մի մոլորակի վրա: Մինչև Երկիր հասնելը:

Նա հոգնած աչքերը անձկորեն շփում էր դեմքին ու ագահորեն շնչում խոտերի բույրը: Մատների արանքում խուտուտ զգաց: Դողացող ափը մոտեցրեց աչքերին ու տեսավ անօգնական, կոշտ թևերից մեկը փշրված գառնիկին... Ինչո՞ւ են այդքան դաժան Մասն ու Նաամը: Ինչո՞ւ նրանք էլ չգիտեն երազել, հիշել, կարոտել... Գուցե ռոբոտներ են՝ ա՞յդ պատճառով: Կամ գուցե նրանք մարդ-մեքենաներ են, որովհետև չեն երազում, չեն հիշում և չե՞ն կարոտում...

...Երկրի ժամանակով մոտ մեկ ամիս նավապետի ուղեկիցներն ուսումնասիրում էին մոլորակը: Նրանք տրորեցին տիեզերանավի պատուհանից երևացող կապտա-կանաչավուն, հյութեղ խոտի շերտը, որին ժամերով նայում ու խորհում էր նավապետը: Հետո նավի ուղեղին հայտնեցին իրենց անսխալ եզրակացությունը, մոլորակը պիտանի է մարդկանց բնակության համար, և հրահանգների համաձայն ավարտված համարելով իրենց աշխատանքները, առանց մեկ վայրկյան իսկ կորցնելու, շտապեցին դուրս գալ տիեզերք և ուղևորվել դեպի հաջորդ չուսումնասիրված մոլորակը:

# Հեռնակ

Քուրդ ժողովրդի պատմությունը դարերի խորքից է գալիս: Քրդերը պատմական թատերաբեմ են իջել ասորեստանցիների, ուրարտացիների և հնագույն մյուս ժողովուրդների հետ միասին: Պատմական ահեղ փոթորիկների միջով, օտարերկրյա նվաճողների դեմ մղած ծանր պայքարում այս ժողովուրդը պահպանել է իր ազգային ինքնատիպությունը, սովորույթները, լեզուն և գրականությունը:

Ներկայումս Քուրդիստանը մասնատված է Թուրքիայի, Իրանի, Իրաքի և մասամբ Սիրիայի միջև: Մասնավորապես 19-րդ դարում ապրուստի միջոցներ գտնելու հույսով քուրդ ժողովրդի մի փոքր հատված բնակություն հաստատեց Հայաստանում: Սակայն, ինչպես հայ աշխատավորությունը, այնպես էլ այստեղի քրդերը բարվոք կյանք չվայելեցին: Ճիշտ է, օսմանյան Թուրքիայի և շահական Իրանի համեմատությամբ Ռուսաստանի կազմի մեջ մտնելը փոքր-ինչ թեթևացրեց քրդերի դրությունը, սակայն ընդհանուր առմամբ այստեղ էլ մարդկանց մի խումբ, որոնց ձեռքում էր գտնվում իշխանությունը, բանակը և ոստիկանությունը, դաժան շահագործման էր ենթարկում հայ և քուրդ աշխատավորին:

Հայաստանի քրդերը իրենց հայ եղբայրների հետ միասին, 1920 թ. նոյեմբերին, մեկընդմիշտ ազատագրվեցին բուրժուա-կալվածատիրական ծանր շահագործումից: Եվ ահա անցած չորս ու կես տասնամյակների ընթացքում Սովետական Միությունում ապրող քրդերը տնտեսական և կուլտուրական այնպիսի վերելք, առաջընթաց ապրեցին, որի մասին արտասահմանյան քուրդ աշխատավորը երազել չի կարող: Չնայած իրենց փոքրաթվությանը, նրանք օգտվում են շատ և շատ իրավունքներից ու արտոնություններից: Քրդական բազմաթիվ գյուղերում գործում են դպրոցներ, որտեղ քուրդ երեխան այլ առարկաների հետ միասին սովորում է իր մայրենի լեզուն, ուսումնասիրում քրդական գրականությունը:

Մեր կուսակցությունն ու կառավարությունը պայմաններ են ստեղծել քրդական դասագրքերի, գրականության, քրդագիտական աշխատությունների լույս ընծայման համար: Երևանում լույս է տեսնում Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի օրգան «Ռյա թազա» («Նոր ուղի») թերթը, ամեն օր երևանյան ռադիոյով կարելի է լսել քրդերեն ռադիոհաղոր-

# …ն ու
# …ն ժողովուրդ



դումներ, ազգային երաժշտություն: Ինչպես քրդաբնակ, այնպես էլ մեր երկրի մյուս շրջաններում զգալի թիվ են կազմում քուրդ ինժեներները, բժիշկները, ուսուցիչները, ագրոնոմները, անասնաբույժները: Քուրդ գիտնականների մի խումբ Հայաստանի գիտությունների ակադեմիայի արևելագիտության սեկտորում զբաղվում է իր ժողովրդի պատմության, լեզվի և բանահյուսության հարցերով: Մի՞թե հնարավոր է մեկ հոդվածի մեջ վարկել բոլոր այն նվաճումները, որոնց հասել է քուրդ աշխատավորությունը սովետական իշխանության տարիներին:

Իսկ ինչպիսի՞ն է արտասահմանյան քուրդ աշխատավորության տնտեսական և քաղաքական վիճակը: Թուրքական Քուրդիստանում, օրինակ, ապրում է ավելի քան 4 միլիոն քուրդ ազգաբնակչություն: Այստեղ քրդերը ենթարկվում են ազգային դաժան ճնշման. քրդական դպրոցներ չկան, գյուղերում չկան բժիշկներ, ամենուրեք տարածված են տարբեր տեսակի հիվանդություններ, մասնավորապես տրախոման: Բնակչության մոտ 90 տոկոսը անգրագետ է: Թուրքական կառավարությունը նույնիսկ ժխտում է քրդերի գոյությունը որպես ինքնուրույն ժողովրդի. նա քրդերին անվանում է «լեռնային թուրքեր»: Թուրքիայում քրդական ազգային ազատագրական շարժման յուրաքանչյուր փորձ խեղդվել է արյան մեջ: Ավելի լավ չէ Քուրդիստանի այն հատվածի բնակչության դրությունը, որը մտնում է Իրանի կազմի մեջ: Այստեղ էլ քրդերին անվանում են «պարսիկներ», ամեն կերպ աշխատելով մոռացության տալ նրանց ազգային ինքնատիպ կուլտուրան, գրականությունը և այլն:

Քուրդ ժողովուրդը սոցիալական և ազգային ճնշման է ենթարկվում նաև Իրաքում ու Սիրիայում: Իրաքի այժմյան պրեզիդենտ Աբդել Սալամ Արեֆը 1963 թ. բացեիբաց հայտարարեց, թե «քրդերը նույն արաբներն են և նրանք սերվել են Եմենից»: Քրդերի պատմության այս կարգի աղավաղումը ունի մեկ նպատակ՝ քուրդ ժողովրդին զրկել իր ազգային իրավունքների համար պայքարելուց և միշտ պահել ճնշված վիճակում:

Քուրդիստանը իր բնական հարստություններով և գյուղատնտեսական մթերքներով կարող է լիովի բավարարել իր ազգաբնակչության պահանջները: Միայն իրանական Քուրդիստանի ընդերքից հանվող նավթի մեկ տարվա արժեքը բավական է, որպեսզի կառուցվեն հարյուրավոր հիվանդանոցներ, դպրոցներ և կուլտուրայի օջախներ: Սակայն անարդարությունը շարունակվում է. երկրի հարստությունները յուրացնում են օտար և ներքին շահագործողները, իսկ ժողովուրդը վարում է չարքաշ կյանք: Եղել են դեպքեր, երբ մայրը հարկադրված վաճառել է իր երեխային: Այդ դեպքերից մեկի ականատես՝ Իրաքի քուրդ առաջադեմ գրող Հաժարը գրում է. «Ես իմ աչքերով տեսա, թե ինչպես մի քրդուհի Կիրկակի փողոցներից մեկում ուզում էր վաճառել իր երկու տարեկան որդուն: Նա արտասվում էր և շշնջում. «Ես երեք երեխա ունեմ և նրանց պահելու ոչ մի միջոց չունեմ: Նրանք սովամահ են լինում»»:



Սարերում

Երբ 1958 թվականի հուլիսի 14-ին Իրաքում տեղի ունեցավ հեղափոխություն և թագավորական ռեժիմը տապալվեց, Իրաքի արաբ և քուրդ ժողովուրդները

*ՍՄՈՅԵ ՇԱՄՈ*

# ՄԵՆՔ ՔՈՉՎՈՐ ԷԻՆՔ

*Մենք քոչվոր էինք, մեր տունը՝ վրան,*
*Ես՝ մի գառնարած կանաչ սարերում,*
*Ու Ալագյազի ջրերի նման*
*Իմ մանկությունն էր հոսում ու գնում:*

*Անցել են տարիք մանկության օրից,*
*Ու քոչն էլ գնաց պապերի հետքով,*
*Բայց ես հիշում եմ նորից ու նորից*
*Մանկութ օրերը իմ հոգեխռով:*

*Ալագյազ սարի լանջերին կանաչ*
*Ես՝ սարի որդիս, բժիշկ եմ արդեն,*
*Չկան վրաններ, հայացքիս առաջ*
*Փովել են գյուղեր՝ բարեկարգ ու շեն:*

# ԱՐԱԶ

*Այս ափին՝ մի գյուղ, այն ափին՝ մի գյուղ,*
*Արազն է հոսում նրանց արանքով,*
*Ցավ ունի և վիշտ այնտեղ ամեն հյուղ,*
*Այս ափին գյուղն է ժպտում ծաղկունքով:*

*Արազն է հոսում ընթացքով իր հին,*
*Մի թևին՝ սև շալ, մյուսին՝ ալվան,*
*Հոսում է որպես երկու աշխարհի,*
*Հնի ու նորի կենդանի սահման:*

հույսեր կապեցին նոր կառավարության հետ, որին ղեկավարում էր գեներալ Աբդել Քերիմ Կասեմը: Նա խոստումներ տվեց, հայտարարեց ի լուր աշխարհի, թե Իրաքում այլևս քրդերին չեն հալածելու և նրանց ազգային իրավունքները կհարգվեն արաբների հետ համահավասար: Սակայն որոշ ժամանակ անց կառավարությունը չկատարեց իր խոստումը, սկսեց հետապնդել և բանտ նետել քուրդ ժողովրդի առաջադեմ զավակներին: Եվ ահա այդ ամենը հասցրեց ապստամբության: 1961 թ. սեպտեմբերից իրաքյան Քուրդիստանը վերածվել է պատերազմական գործողությունների թատերաբեմի: Քուրդ գյուղացին, բանվորը և առաջավոր մտավորականները զենքը ձեռքներին պայքարում են իրենց ազգային իրավունքների ճանաչման համար: Նրանք պահանջում են, որ իրենց տրվի ազգային ինքնավարություն, դա նշանակում է՝ քրդերենը Քուրդիստանում դարձնել պաշտոնական լեզու, դասավանդումը դպրոցներում կատարվի մայրենի լեզվով, Քուրդիստանում պետական իշխանության օրգաններում նշանակել քրդերի, երկրի ընդերքից հանվող նավթի շահույթի մի մասը տրամադրել ժողովրդի նյութական պայմանների բարելավմանը և կուլտուրայի զարգացմանը: Ինչպես տեսնում եք, քուրդ դեմոկրատները անկարելի ոչինչ չեն պահանջում Իրաքի կառավարությունից: Ավելին. նրանք բազմիցս հայտարարել և հայտարարում են, որ քրդերի ազգային իրավունքների ճանաչման դեպքում իրենք պատրաստ են միասնաբար ծառայել Իրաքի բարգավաճման գործին:

„Սակայն քրդերի ազգային օրինական իրավունքների ոտնահարումը Իրաքում շարունակվում է առ այսօր: Իրաքի կառավարությունը արդեն հինգերորդ տարին է, ինչ պատերազմում է քրդական դեմոկրատական ուժերի դեմ:

Պատերազմող կողմերի ուժերը խիստ անհավասար են. Իրաքյան կառավարության զորքերն ունեն ավելի մեծ հնարավորություններ, քան ապստամբները: Սակայն այդ առավելությունը նրանց հաջողություն չի բերում: Ինչո՞ւ: Համեմատության համար հիշենք մեր երկրի պատմության մի էջը: Պատմության դասագրքերից, գեղարվեստական գրականությունից և կինոներից մեզ հայտնի է, թե ինչպես 1918—1921 թվականներին մեր երկրում տեղի ունեցած քաղաքացիական կռիվների ժամանակ բանվորների և գյուղացիների վատ զինված, պարենից և ապրուստի մյուս միջոցներից զուրկ ջոկատները որպիսի հերոսություն էին հանդես բերում օտարերկրյա ինտերվենտների և սպիտակգվարդիականների դեմ մղվող պայքարում: Մեր թշնամիները ունեին ռազմական և նյութական ավելի մեծ հնարավորություններ, սակայն հաղթեց բանվորների և գյուղացիների հեղափոխական պայքարը: Ինչո՞ւ, որովհետև մեր երկրի աշխատավորությունը պայքարում էր իր սրտին մոտ նպատակների, արդար գործի համար, նա գիտեր, որ վրկանքը և անձնազոհությունը կհատուցվի, երկիրը մեկընդմիշտ կազատագրվի շահագործողների դաժան լծից և կապահովվի ժողովրդի բարեկեցիկ կյանքը: Ահա այդպիսի արդարացի պայքար է մղում նաև Հարավային Քուրդիստանը: Եվ որքան էլ դժվար են այդ հեղափոխական պայքարի պայմանները, նրա մասնակիցները չեն հուսահատվում և ցուցաբերում են հերոսության ու անձնուրացության անկրկնելի օրինակներ: Բերենք այսպիսի իրական դեպք: Քուրդ ժողովրդի անվեհեր զավակ, 64-ամյա գեներալ Մուստաֆա Բարզանու կողմից գլխավորվող քրդական ազատագրական բանակի ամենամարտունակ ջոկատները կոչվում են «Փեշմերգ», որը նշանակում է «մահից չվախեցողներ»: 1963 թ. ամռանը Ռևանդուզի շրջանում քրդական չորս զինվորների հանձնարարություն է տրվում՝ խափանել իրաքյան 250 հոգուց բաղկացած մի ջոկատի առաջխաղացումը, որը զինված էր թեթև հրետանիով և տանկերով: Ուժերը անհավասար էին, առաջադրանքը խիստ ծանր: Սակայն քուրդ հետախույզները որոշում են ամեն գնով կատարել հանձնարարությունը: Նրանք կառավարական զորքերի այս ջոկատի մեջ են մտնում աննկատ կերպով, նստում տանկերից մեկը, և այդ պահին սկսվում է տագնապը: Տեղի ունե-

ցած ընդհարման ժամանակ քուրդ չորս պարտիզաններին հաջողվում է սպանել թշնամու 50 ձիավորի, և հետո իրենք էլ ընկնում են հերոսի մահով: Այսպիսի օրինակները շատ են: Քուրդիստանի ազատագրական բանակում քրդերի հետ միասին կառավարական պատժիչ ջոկատների դեմ կռվում են նաև արաբներ, ասորիներ և հայեր. նրանց շարքերում կան նույնիսկ կանայք: Իր մարտական սխրանքներով մեծ համբավ է վաստակել երիտասարդ ասորուհի Մարգարետա Ջորջեսը, որին պարտիզանները ի նշան սիրո և հարգանքի անվանում են «Քույր Մարգարետա»:

Քուրդիստանի ազատագրական բանակի մարտիկները պայքարում են ոչ միայն քրդերի ազգային իրավունքների ճանաչման, այլև ամբողջ Իրաքում դեմոկրատական կարգեր հաստատելու համար: Ահա թե ինչու այդ պայքարը պաշտպանվում է արաբ ժողովրդի առաջավոր ուժերի կողմից:

1961 թ. սեպտեմբերից մինչև այժմ Իրաքում մի քանի կառավարություններ են հաջորդել միմյանց: Սակայն նրանցից և ոչ մեկը լրջորեն չի ուզում հաշվի առնել քուրդ ժողովրդի արդարացի պահանջները և քրդական կոնֆլիկտի վերացումով պայմաններ ստեղծել Իրաքի խաղաղ ու դեմոկրատական զարգացման համար:

Քուրդիստանում տեղի ունեցող հեղափոխական շարժման մասնակիցները լի են վճռականությամբ՝ պայքարելու իրենց նպատակների իրականացման համար: Նրանք պայքարում են «Ինքնավար Քուրդիստան կամ մահ» լոզունգով: Անցած չորս ու կես տարիների փորձը ցույց է տալիս, որ ժողովրդի այդ հերոսական պայքարը բռնի ուժով ճնշել հնարավոր չէ: Այդ պայքարը ջերմորեն պաշտպանվում է աշխարհի բոլոր երկրների առաջավոր հասարակության կողմից, քրդերի արդարացի պահանջները բավարարելու վճռական դիրքով հանդես է գալիս Սովետական Միությունը: Կասկած չի կարող լինել, որ, չնայած իր կրած դժվարություններին, քուրդ ժողովրդի պայքարը պսակվելու է հաղթանակով:

*ՇԱՔՐՈ ՄՀՈՅԻ*

*Պատմական գիտությունների թեկնածու*




(Ժողովրդական զրույց)    Նկ. ԱՆԱՏՈԼԻ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*Ամեն տարի, երբ ամառը իր տեղը զիջում էր ոսկե աշնանը, ծաղիկները հավաքվում էին խորհրդի և հաշվետվություն տալիս իրենց այդ տարվա կատարած գործերի մասին: Այն ծաղիկը, որն իր կատարած գործով արժանանում էր բոլորի համակրանքին, բարձր պարգև էր ստանում:*

*Եվ ահա, ուշ երեկոյան, մեծ այգու ծաղկանոցում, ծաղիկները հավաքվել էին խորհրդի: Խորհրդռում այս անգամ նախագահում էր Ոսկեծաղիկը:*

*Բոլոր ծաղիկները ներկա էին, բացակայում էին միայն Անթառամը, Նարգիզը և Կակաչը:*

*— Դե, ինչպես երևում է, մենք խորհուրդը կսկսենք նրանց բացակայությամբ, արդեն բավական ուշ է, — խոսում է Ոսկեծաղիկը:*

*Եվ ծաղիկները հերթականությամբ պատմում են իրենց կատարած գործերի մասին:*

*Վարդը ասում է.*

*— Այս տարի ես առանձնապես ոչինչ չեմ արել: Ծաղկել եմ դպրոցի այգում, իսկ ուսումնական տարվա վերջին զարդարել եմ դպրոցի դահլիճը, որտեղ հանդիսավոր երեկո էր կազմակերպվել: Այդ*

օրը ես իմ անուշ-անուշ հոտով հարյուրավոր փոքրիկ դպրոցականների եմ ուրախացրել:

— Բարի գործ ես կատարել, սիրելի՛ քույրիկ, միաբերան գոչում են ծաղիկները:

— Ես էլ, — սկսում է Համբիկը՝ նազանքով ու քնքշորեն տարուբերելով գլխիկը, — այս տարի հարսանիքի եմ մասնակցել, և ինձանով իր կուրծքն է զարդարել սիրունատես հարսնացուն...

— Իսկ ես, — ասում է Կուժկոտրուկը, — այս տարի միրի տանը մասնակցել եմ խնջույքի: Զորս կողմս ոսկի, արծաթ ու անգին քարեր էին: Եվ ինչպիսի՜ զրույցներ եմ լսել, ամբողջ պատերազմների ու կոտորածների մասին...

— Բավական է, բավական, ո՜վ Կուժկոտրուկ, մենք այլևս չենք ուզում քեզ լսել, դու միայն դժբախտություն ես բերում, — բղավում են ծաղիկները:

Եվ այսպես, հերթով ամեն ծաղիկ իր կատարած գործի մասին էր պատմում: Վերջում, երբ արդեն խորհրդակցում էին, թե ծաղիկներից ով է արժանի նվիրատվության, հանկարծ բոլորովին ուշացած ներս են մտնում Անթառամիկը, Նարգիզն ու Կակաչը:

— Ներողամիտ եղեք ուշանալու համար, — ասում են նորեկները, — մենք շատ հեռվից՝ Քուրդիստանի անմատչելի լեռներից ենք գալիս: Այնտեղ, ռազմի դաշտում մենք երեք սպանված զինվորներ տեսանք, որոնք իրենց հայրենիքի ու ժողովրդի ազատագրման համար մղվող պայքարում ընկել էին հերոսի մահով: Մենք մեր թերթիկներով հովանի էինք արել նրանց՝ պաշտպանելով արևից ու քամուց: Իսկ հետո զոհված հերոսների ընկերները եկան և պատվով նրանց հանձնեցին հայրենի հողին:

— Ո՜վ սքանչատես ծաղիկներ, ձեր գործը արժանի է ամենամեծ պատվի ու հարգանքի: Այս տարվա համար սահմանված պարգևը ձեզ է տրվում, — միաբերան բացականչում են խորհրդի անդամ ծաղիկները:

*Քրդերենից թարգմանեց ԱԳԻՍՏԷ ԽՈՒԴՈՆ*



## ՄՈՍԿՎԱ

*ՍԱՀԻԴԻՆ ԻԲՈ*

Իմ սրտի մեջ հազար կարոտ,
Հազար մուրազ ու սեր,
Իմ աչքերում այս առավոտ
Քո պատկերն է վսեմ:
Միլիոն քրդի սիրտ է խփում
Իմ կրծքի տակ հիմա,
Շողշողացող քո մեծ սրտում
Այսօր հյուր եմ ահա.
Դու մեր մուրազ, դու մեր բաղձանք,
Մոսկվա, չքնաղ քաղաք:

Ես քեզ համար երգ եմ բերել
Եվ ծաղիկներ քնքուշ,
Ես բերել եմ քեզ բյուր սերեր
Մեր սարերից անուշ,
Մեր մայրերի, մանուկների
Սուրբ համբույրն եմ բերել,
Նրանց հողին, արտերին
Դու քո լույսն ես հեղել.
Դու մեր մուրազ, դու մեր բաղձանք,
Մոսկվա, չքնաղ քաղաք:



*Քրդուհին երջանիկ է, որ իր զավակները կրթություն են ստանում...*

## ԻՄ ԲԱԽՏԻ ՃԱՄՓԱՆ

Ինձ օրոր է մայրս ասել
Արագածի զմրուխտ լանջին,
Այնտեղ եմ ես աչքս բացել
Եվ հյուսել իմ երգն առաջին:

Լույսի շեմից կյանք եմ մտել՝
Փոքրիկ ջահը իմ վառելով,
Ու իմ բախտի ճամփան գտել
Հայոց լեզվով ու տառերով...

*ԱՆԻԽԱՆԻ ՄԱՄԻ*

*(Աշտարակի, Կոշի միջնակարգ դպրոցի աշակերտ)*



# ԻՄԱՍՏՈՒՆ ԲԱԼՈՒԼԸ ԵՎ ԽԱԼԻՖԸ

(Հեքիաթ)

Իմաստուն Բալուլին է դիմում մի երիտասարդ և ասում, որ ինքը լսել է խալիֆի, նրա պալատների ու ապրուստի մասին. սակայն իր աչքով չի տեսել և ցանկություն է հայտնում, որպեսզի Բալուլը իրեն առաջնորդի խալիֆի պալատը։

— Անհնարինն ես պահանջում, որդիս.— ասում է Բալուլը.— պալատի պատերն էլ. մինչև անգամ, սարսափում են այդ արնախում դահճից։ Բայց քանի որ խնդրել ես, ես քեզ կառաջնորդեմ. միայն մի պայմանով, որ իմ խորհուրդները լսես։ Նախ՝ որպեսզի խալիֆի չար հայացքը չգրավես քեզ վրա, պալատ մտնելիս պետք է մի շատ աննկատ տեղ ընտրես. ոչ մեկին ոչ մի հարց չտաս ու հարցերին չպատասխանես։

—Ամեն ինչ կանեմ այնպես, ինչպես դու ես ցանկանում, իմաստուն,— ասում է երիտասարդը և ճանապարհվում դեպի խալիֆի պալատը։

Հակառակ Բալուլի խորհրդին՝ երիտասարդը պալատում իր համար ընտրում է ամենաբարձր և տեսանելի տեղը։

Պալատը շուտով լցվում է հրավիրվածներով։ Խալիֆն իր սարսափելի հայացքը հառել էր հավաքվածներին և երկար խոսում էր այն մասին. թե ինչպես պետք է իրենց պահեն պալատում։ Վերջապես հոգնած. չորացած շուրթերով խալիֆը փլվում է բազկաթոռին և հրամայում. որ իր համար քաղցրահամ ձմերուկ բերեն։

Ծառաները չէին հասցրել արծաթե մատուցարանով ձմերուկը դնել խալիֆի առջև. երբ երիտասարդը տեղից վեր է թռչում ու խալիֆին է առաջարկում իր անգին քարերով զարդարված դանակը։

Ձմերուկը ճաշակելուց հետո խալիֆը ագահ աչքերով թանկարժեք դանակն է ուսումնասիրում։ Վերջապես նա վեր է կենում ու դիմում ներկաներին.

— Պարոննե՛ր, դուք լավ հիշում եք, որ այն տարին թալանեցին իմ գանձարանը։ Բազմաթիվ թանկարժեք այլ իրերի հետ գողացել էին նաև իմ՝ այս ալմաստապատ դանակը։ Այժմ, ինչպես տեսնում եք, գողերից մեկը իր ոտքով է այստեղ եկել։ Նա պետք է վերադարձնի իմ ամբողջ հարըստությունը։ Իսկ մինչև այդ, ես նրան պետք է տանջեմ զնդանում։

Խեղճ երիտասարդը օգնություն հայցող հայացքով նայում է Բալուլին։ Բալուլը վեր է կենում տեղից, խոնարհվում է խալիֆի առաջ և ասում.

— Այս երիտասարդը ինձ հետ է եկել այստեղ, նա իմ հյուրն է։ Հյուրն էլ, ինչպես գիտեք, տանտիրոջ համար ամենասուրբ բանն է։ Խոնարհապես խնդրում եմ ամենազոր խալիֆից, որպեսզի թույլ տա, որ իմ հյուրը մի գիշեր էլ մնա իմ հարկի տակ, այնուհետև ինչպես կամենում է թող վարվի նրա հետ։

— Թող քո ասածը լինի, իմաստուն Բալուլ։ Բայց նախ՝ երդվիր, որ նրան չես խրատելու։

— Երդվում եմ ամենազոր աստծով, որ նրա հետ չեմ զրուցելու,— երդում է տալիս Բալուլը և երիտասարդի թևից բռնած՝ գնում են տուն։

Գնում են լուռ։ Երիտասարդը մի անգամ փորձում է զրույցի բռնվել իմաստունի հետ, սակայն ապարդյուն։ Բալուլը իր տված երդումին հաստատ է մնում։

Տանը իմաստունը երկար ժամանակ մտորումների մեջ էր։ Ինչպե՞ս անի, որ այդ երիտասարդին փրկի վերահաս վտանգից։ Եվ ահա ելքը գտնում է։ Բալուլը կանչում է իր հավատարիմ բրդոտ կատվին և սկսում է բարձրաձայն զրուցել նրա հետ։

— Իմ բրդոտ Իբրահիմ, չէ՞ որ ես քեզ զգուշացրի, որ հետևես իմ խորհուրդներին, իսկ դու հակառակն էիր անում։ Ես գիտեմ, այդ արնախումի ձեռքերը չեն դողա քեզ սպանելու համար։ — Իսկ գորգին նստած երիտասարդը ամեն ինչ լսում էր ու գիտեր, որ իմաստունի խոսքերը՝ ուղղված են իրեն։ Բալուլը շարունակում է զրույցը կատվի հետ։ — Վաղը, երբ նորից կկանգնես խալիֆի առաջ, այդ թանկարժեք դանակի մասին ահա ինչ պետք է պատմես ներկաներին. «Հայրս առևտրական քարավանի տեր էր։ Երբ իր քարավանով անցնում էր մի օազիսով, ավազակները հարձակվել են նրա քարավանի վրա, թալանել և այդ նույն դանակով սպանել են հորս։ Եվ ահա, քանի տարի է ես այդ դանակը ինձ մոտ եմ պահում ու փնտրում եմ ավազակին՝ վրեժխնդիր լինելու համար։ Իսկ երեկ, ինչպես լսեցիք, խալիֆը հայտարարեց, որ այդ դանակը պատկանում է իրեն։ Ուրեմն, ես գտել եմ հորս սպանողին և վրեժի հետ միասին հորս արյան գինն էլ պետք է վերցնեմ»։

Մյուս օրը երիտասարդը բոլորի ներկայությամբ պատմում է հիշյալ պատմությունը։ Խալիֆը տեսնելով, որ խորամանկությամբ ոչինչ չի կարող անել, դանակը վերադարձնում է երիտասարդին, բավականին հարստություն է տալիս որպես արյան գին և նրան ազատ արձակում։

Երիտասարդը շնորհակալություն է հայտնում Բալուլին՝ նրա խելքի, իմաստության և հնարամտության համար։

*Քրդերենից փոխադրեց ԱԳԻՏԵ ԽՈՒԴՈՆ*



## Իմ հայրենիքը

ՇԿՈՅԵ ՀԱՍԱՆ

Իմ հայրենիք, հող հարազատ,
Դու ինձ համար երկինք ազատ,
Դու ինձ համար հույս ու հավատ,
Ծաղկահանդես, վարդի պալատ։
Իմ սրտի լար, իմ սազի լար,
Դու իմ բախտն ես, մուրազն անմար,
Դու իմ շունչն ես և իմ հոգին,
Դու իմ սերն ես միշտ նոր, անգին։
Անթև թռչուն եմ առանց քեզ,
Անզույն, անբույր ծաղիկ եմ ես,
Ուր էլ գնամ, ուր էլ մնամ,
Քեզ կարոտած ետ կդառնամ,
Իմ թանկագին, իմ հարազատ,
Սովետական հող իմ ազատ։

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

## Գարնան ճամփան

ՄԻՔԱՅԵԼ ՌԱՇԻԴ

Ճամփան սար է բարձրանում
Ու ձյուների մեջ կորչում,
Ճամփան ձորի բերանում,
Գետում իր պոչն է թրջում։

Գետը փրփուր է դառել,
Գետը ներքև է հոսում,
Շուրջը կանաչ է վառել,
Գարնան մասին է խոսում։

Իսկ սարերում ձյուն կա դեռ,
Ճամփան կորել է ձյան մեջ,
Ճամփան քրտնել է այնտեղ՝
Ջյուների հետ բացած վեճ։

Դաշտում գարունն է շրջում
Կանաչի մեջ թարմ, անուշ,
Սարում ճամփան է կանչում,
Թե՝ շուտ եկեք, ուշ է, ո՜ւշ։

Գարունն արևն իր վառած,
Ծաղիկներով, կանաչով,
Դեպի սարերն է քշում
Ողղանջով ու կարկաչով։

## Իմ արևը

ՖԵՐԻԿԵ ՈՒՍԻՎ

Ամեն լուսածեգին
Խնդում է իմ հոգին,
Երբ իմ լուսամուտից,
Ելած սարի ուսից,
Արևն այգաբացի
Ինձ է գալիս այցի։

Ամեն լուսածեգին,
Ամպ ու զամպին, մեգին,
Երբ չի գալիս այցի
Արևն այգաբացին,
Սիրտս է դարձյալ ցնծում,
Որ արևի տեղակ
Մանուկս օրորոցում
Իր աչքերն է բացում։





ԻՆՉՈՒ՞Կ

ՀԵՏԱՔՐՔՐԱՍԵՐԻ

ԻՆՉՈ՞Ւ ԵՐԲ՞ ՈՐՏԵ՞Ղ

ԱԿՈՒՄԲ

# ԵՐԿՈՒ ՀԱՐՑ

1. Ես մի տեղ կարդացել եմ, որ ոնգեղջյուրը ապրել է մոտ 20 միլիոն տարի առաջ: Ինձ հետաքրքրում է, թե գիտնականներն ինչպես են իմանում, որ այս կամ այն անհետացած կենդանին երբ է ապրել. չէ՞ որ այդ ժամանակ մարդը գոյություն չի ունեցել:

2. Խնդրում եմ պատասխանել նաև, թե եղե՞լ է արդյոք համաշխարհային ջրհեղեղ:

ՀԱՄԼԻԿ ԳԵՎՈՐԳՅԱՆ

Երևանի Պ. Պռոշյանի անվան դպրոցի 6-րդ դասարանի աշակերտուհի

## ՈՒՐԱՆԻ ԵՎ ԿԱՊԱՐԻ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ

Գիտնականները Երկրի պատմությունը բաժանում են մի շարք շրջանների ու դարաշրջանների, որոնցից յուրաքանչյուրը հաշվվում է միլիոնավոր ու տասնյակ միլիոնավոր տարիներ: Այդ ժամանակներում են երևան եկել ու անհետացել հնագույն ծովերը, հսկայական ծալքերով աճել են լեռները, փոփոխության է ենթարկվել բուսական ու կենդանական աշխարհը:

Երկրի կեղևի տարբեր շերտերում գիտնականները վաղուց են գտել զանազան կենդանիների և բույսերի հետքեր ու քարացած մնացորդներ: Որքան հին է շերտը, այնքան օրգանիզմները պարզ կառուցվածք ունեն:

Ամենահին շերտերում գտնըվում են միայն անողնաշարավոր կենդանիների մնացորդներ: Հետագա շերտերում արդեն երևան են գալիս ձկները, իսկ ավելի ուշ՝ թռչունները:

Անհետացած կենդանի էակների մնացորդները ցույց են տալիս, որ կյանքը զարգացել է միլիոնավոր տարիների ընթացքում և կենդանի էակները միշտ չէ, որ եղել են այնպես, ինչպես կան այժմ. զարգացումը գնացել է պարզից դեպի բարդը:

Գիտնականները զանազան եղանակներով հաշվել են աշխարհագրական շերտերի տարիքը: Բայց ամենաստույգ եղանակը գտնվեց այն ժամանակ, երբ քիմիկոսները հայտնաբերեցին ուրանի և այլ ռադիոակտիվ նյութերի արտասովոր հատկությունները: Այդ նյութերի մեծ ու ծանր ատոմները մեկը մյուսի հետևից աստիճանաբար քայքայվելով վեր են ածվում սովորական կապարի ատոմների: Ռադիոակտիվ քայքայումը տեղի է ունենում շատ դանդաղ: Հարյուր գրամ ուրանը մեկ գրամ կապար է դառնում վաթսունհինգ միլիոն տարվա ընթացքում:

Այս կամ այն շերտում ուրանի հանք գտնելիս երկրաբանները նայում են, թե ինչքան կապար կա այնտեղ և հաշվում են, թե քանի միլիոն տարի էր հարկավոր նրա առաջացման համար: Այս եղանակով գիտնականներն իմանում են տվյալ շերտի տարիքը և այն կենդանու ապրած ժամանակը, որի մնացորդները գտնվել են այդ շերտում:

## ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՋՐՀԵՂԵՂ

Սիրելի Համլիկ, համաշխարհային ջրհեղեղի մասին եղած ավանդությունը, հավանաբար, դու լսել ես այն մարդկանցից, որոնք կարդացել են կրոնական գրքեր: Աստվածաշնչում գրըված է, թե շատ ու շատ դարեր առաջ մարդկանց գործած մեղքերը բարկացրին աստծուն և նա որոշեց ոչնչացնել մարդկային ցեղը: 40 օր շարունակ անձրև եկավ և հեղեղեց աշխարհը: Մարդիկ ու կենդանիները ոչնչացան: Փրկվեց միայն Նոյ անունով մի մարդ, որը աստծու կամքով նախօրոք կառուցել էր նավ-տապան, վրան տեղավորել իր ընտանիքը և զանազան կենդանիներ:

Աստվածաշունչը գրող մարդկանց համար աշխարհի հասկացությունը Պաղեստինն էր: Ուրիշ երկրներից և հատկապես



*Շունն առաջին ընտանի կենդանին է: Ընտանի շներն առաջացել են գայլերից ու չախկալներից: Այժմ աշխարհում շան մոտ 400 տարատեսակ գոյություն ունի: Դրանք իրարից տարբերվում են և՛ չափերով, և՛ գույներով, և՛ կազմվածքով, և՛ բրդի ծածկույթով և ուրիշ շատ հատկանիշներով: Դուք, երեխաներ, ձեր կյանքում շատ եք շուն տեսել, շփվել նրանց հետ, բայց տպագրում ենք այս լուսանկարները, որպեսզի տեսնեք, թե շների ինչ արտառոց տեսակներ ևս կան:*



3



1



2





5

*1. Չաու-չաու: 2. Աֆղանական բարակ: 3. Կուկեր-սպանիել: 4. Բեդ լինգտոն-տերյեր: 5. Իռլանդական տերյեր:*

գոյություն չի ունեցել: Այդ առասպելը մարդիկ հնարել են մայր ցամաքների մասին նրանք գաղափար անգամ չունեին: Ուրեմն նրանք չէին կարող խոսել համաշխարհային ջրհեղեղի մասին, որովհետև նրա՛նց հայտնի էր միայն իրենց ապրած տեղում եղած ջրհեղեղը:

Ջրհեղեղ եղե՞լ է, թե՞ ոչ: Այո՛. գուցե և եղել է: Այն գետերը, որոնց ափերին մարդիկ բնակություն էին հաստատել, ինչ-ինչ պատճառներով կարող էին բարձրանալ և դուրս գալ ափերից: Բայց դրանից չէին կարող ոչնչանալ բոլոր կեն[illegible]. Լակները: Նոյի տապանը նույնպես շատ հին դարերում: Նրանք կարծում էին, թե աստված բարկացել է իրենց վրա, ջրհեղեղով ուզում է պատժել:

Ջրհեղեղի մասին ավանդություններ կան նաև Հնդկաստանում, Չինաստանում, Մեքսիկայում. այնպիսի երկրներում, որտեղ կան մեծ գետեր: Բայց Եգիպտոսում, որը գտնվում է Պաղեստինից ոչ հեռու, նման ավանդություն գոյություն չունի: Դա նրանից է, որ Նեղոսի վարարելը երկրին ոչ թե դժբախտություն է բերում, այլ՝ օգուտ:

Մարդկության գոյության ընթացքում համաշխարհային ջրհեղեղ երբեք չի եղել:

## ԱՎԳՅԱՆ ԱԽՈՌ

Հին հույները բազմաթիվ առասպելներ են ստեղծել իրենց հերոսների և աստվածների մասին: Այդ առասպելներում պատմվում է հույների սովորությունների, զբաղմունքի, պայքարի ու աշխատանքի մասին: Հերակլեսի մասին ստեղծված առասպելը, թերևս, ամենատարածվածն է եղել, քանի որ նրանք շատ են սիրել այդ հզոր հերոսին:

Ըստ առասպելի, Հերակլեսը անմահություն կստանար, եթե նա կատարեր տասներկու սխրագործություն: Եվ ահա Հերակլեսի 6-րդ սխրագործությունը կայանում է նրանում, որ նա պետք մաքրեր ճաճանչափայլ Հելիոսի որդի Ավգիասի ախոռների գոմաղբը: Ավգիասը ուներ հազարավոր եզներ, և նրա գոմերից տարիներով չէր մաքրվել գոմաղբը:

Հերակլեսը խոստանում է մեկ օրվա մեջ մաքրել այն: Ավգիասը չի հավատում դրան: Այն ժամանակ, երբ Ավգիասը իր հյուրերի հետ նստած էր խնջույքի, Հերակլեսը երկու հակադիր կողմերից քանդում է ախոռների պատերը և երկու գետերի ջրերը շուռ տալիս այնտեղ: Գետերը մի օրվա մեջ քշում տանում են գոմաղբը, և հետո Հերակլեսը նորից շարում է քանդված պատերը: Այդպես նա մաքրեց Ավգիաս արքայի ախոռները, որից և առաջացել է «Ավգյան ախոռ» թևավոր արտահայտությունը: Այն օգտագործվում է չափազանց կեղտոտ ու բարձիթողի մատնված շենք, բնակարան կամ մի որևէ այլ տեղ բնութագրելու ժամանակ:

Վ. Ի. Լենինը ցարական Ռուսաստանը համարել է ավգյան ախոռ, որը մաքրեցին բոլշևիկները:



## ԹԵՄԻԴԱՅԻ ԿՇԵՌՔ

Թեմիդան, ըստ հունական դիցաբանության, եղել է արդարադատության աստվածուհին, որը մի ձեռքում ունեցել է սուր, իսկ մյուսում՝ կշեռք: Ըստ հանցանքի ծանրության՝ սրով կայացրել է դատավճիռը: «Թեմիդայի կշեռք» ասելով հասկացվում է արդարադատություն, անկողմնակալ և անսխալ որոշում ընդունել:

## ԴԱՄՈԿԼՅԱՆ ՍՈՒՐ

Ըստ ավանդության, Դամոկլեսը Սիրակուզայի բռնակալ Դիոնիսիոսին (432—367 թ. մ. թ. ա.) համարում էր ամենաբախտավորը բոլոր մարդկանց մեջ: Դիոնիսիոսը, որպեսզի ցույց տա, որ մարդու դիրքը և երջանկությունը միշտ էլ վտանգի տակ է, իր փառքին նախանձող Դամոկլեսին նստեցնում է իր գահին, իսկ նրա գլխի վերևը ձիու մազով կախում է սուր: Դիոնիսիոսը բացատրում է, որ դա բոլոր այն վտանգների խորհրդանիշն է, որ կախված է ամեն մի տիրակալի գլխին, չնայած արտաքնապես թվացող երջանիկ ու ապահով կյանքին: Այստեղից էլ «Դամոկլյան սուր» արտահայտությունը, որ նշանակում է վտանգ, որ ամեն րոպե կարող է պայթել մարդու գլխին:



## ԳՈՐԴՅԱՆ ՀԱՆԳՈՒՅՑ

Ըստ հնագարյան լեգենդի, փռյուգիական թագավոր Գորդիոսը Զևսի տաճարին նվիրաբերում է երկանիվ մի սայլ, որին լծված եզները կապված էին այնպիսի խճճված ու բարդ հանգույցով, որը ոչ ոք չէր կարող քանդել: Գուշակներն ասել էին, որ նա, ով կկարողանա քանդել հանգույցը, կտիրանա աշխարհին: Ալեքսանդր Մակեդոնացին (356—323 թ. մ. թ. ա.) մտնելով տաճար, առանց երկար մտածելու, հանում է թուրն ու մի հարվածով կտրում հանգույցը: Այստեղից էլ առաջացել է «Գորդյան հանգույց» արտահայտությունը, որը նշանակում է խառնաշփոթ, խճճված հարց: «Նա կտրեց Գորդյան հանգույցը», — ասվում է այն մարդու մասին, որը լուծում, լուսաբանում է որևէ կնճռոտված, խառնաշփոթ հարց:

Ս. ԻՇԽԱՆՅԱՆ

# ՉԱՐԼԻ ՉԱՊԼԻՆՆ ԻՐ ՄԱՍԻՆ



Լեմբետ ուղևորվելուց հետո համարյա մեկ տարի մենք մնացինք Հենուելում, որն իմ կրթության հարցում կարևոր դեր խաղաց: Ես սկսեցի հաճախել դպրոց և սովորեցի գրել ազգանունս՝ Չապլին:

Այդ բառը ինձ շատ էր դուր գալիս, և ես կարծում էի, որ այն իսկապես հենց ինձ նման է:

Հենուելի որբանոցում երկու բաժանմունք կար, մեկը տղաների համար, մյուսը՝ աղջիկների: Շաբաթ օրերը մեծ աղջիկները լողացնում էին փոքրիկներին: Ճիշտ է, այն ժամանակ թեպետ ես յոթ տարեկան էլ չկայի, սակայն դա վիրավորում էր իմ համեստությունը:

Երբ ես դարձա յոթ տարեկան, ինձ տեղափոխեցին մեծերի բաժանմունքը, որտեղ տեղավորված էին յոթից տասնչորս տարեկան տղաները: Այժմ ես իրավունք ունեի խառնվել մեծերի կյանքին, մասնակցել նրանց խաղերին, բոլորին հավասար զբաղվել սպորտով և շաբաթական երկու անգամ դուրս գալ հեռավոր զբոսանքի:

Թեպետ Հենուելում մեզ վատ չէին պահում, սակայն, դա մի ողորմելի կյանք էր: Թախիծը կարծես ներծծվել էր օդի մեջ, տխուր էին թվում անգամ գյուղամիջյան այն ճանապարհները, որտեղ մենք՝ հարյուր տղաներ, վայելչորեն զբոսնում էինք շարքերով: Ես այնքան ատում էի այդ զբոսանքները, ինչպես նաև այն գյուղերը, որոնց միջով անցնում էինք մենք՝ տեղի բնակիչների հետաքրքրասեր հայացքների ներքո: Նրանք մեզ վրա նայում էին որպես բանտախուցի բնակիչների:

Դպրոցի խաղադաշտը, որ պատած էր քարե սալիկներով, զբաղեցնում էր մոտ կես հեկտար տարածություն: Նրա շուրջը այլուսաշեն միահարկ տներ էին, որտեղ տեղավորված էին ծառայողների աշխատասենյակները, պահեստները, բուժարանը, ատամնաբույժի ընդունարանը և տղաների հանդերձարանը: Ամենամութ անկյունում գտնվում էր պատժասենյակը, որտեղ ոչ վաղուց աքսորված էր տասնչորսամյա մի տղա, երեխաների ասելով՝ մի «կապը կտրած»: Նա փորձել էր փախչել դպրոցից, երկրորդ հարկի լուսամուտից բարձրացել էր տանիքը, իսկ երբ վերակացուները փորձել էին իջեցնել, ըմբոստ կերպով դիմադրել էր պետերին՝ նրանց վրա շպրտելով այլուսի կտորներ և շագանակներ: Դա տեղի էր ունեցել ուշ երեկոյան, երբ մենք՝ փոքրիկներս արդեն քնած էինք, սակայն առավոտյան մեծ տղաները երկչոտ հիացմունքով պատմեցին մեզ նրա հերոսության մասին:

Նման արարքների համար պատժում էին ուրբաթ օրերը, մարմնամարզության դահլիճում: Դա քսանհինգ մետր երկարությամբ և տասնհինգ՝ լայնությամբ, բարձր առաստաղով մի մռայլ սենյակ էր, մի պատի մոտ առաստաղի գերաններից ճոպաններ էին կախված, որոնց վրա երեխաները սովորում էին մագլցել: Ուրբաթ առավոտները յոթից տասնչորս տարեկան երկուհարյուր-երեքհարյուր տղաներ զույգ-զույգ մտնում էին այնտեղ և զինվորականների նման շարվում էին «Ո» տառի դասավորությամբ: Դպրոցի երկար սեղանը, որի հետևում խմբվում էին «հանցագործները», շրջափակում էր շարքը, առաջացնելով քառանկյունի: Սեղանի աջ կողմում կախված էր փայտե մի շրջանակ՝ ձեռքերը կապելու կաշվե օղակներով, իսկ կողքին չարագուշակ կերպով ճոճվում էին ճիպոտները:



Ավելի մանր հանցագործության համար հանցագործին երեսնիվայր պառկեցնում էին սեղանին, ոտքերը կապում, որպեսզի վերակացուին հեշտ լինի նրան բռնել, որից հետո մյուս վերակացուն գլխին էր քաշում նրա շապիկը և ամուր պրկում վարտիքը:

Զորացրված նավապետ Հինդրեմը՝ երկու հարյուր ֆունտ քաշով մի տղամարդ, ձախ ձեռքը դնում էր մեջքին, իսկ աջով՝ մատի համտությամբ մի եղեգնաճիպոտ բռնում և փորձում էր կանգնելու դիրքը, թե որտեղից ավելի ուժգին կստացվեն հարվածները: Որից հետո նա դանդաղ ու սպառնալի բարձրացնում էր ճիպոտը, որը վժժալով ճեղքելով օդը, իջնում էր տղայի նստատեղին: Դա մի սարսափելի տեսարան էր, և ամեն անգամ շարքում կանգնած տղաներից մեկնումեկը ուշաթափվում էր:

Որպես պատժի նվազագույն չափ ընդունված էր երեք հարված, իսկ առավելագույն՝ վեց: Եթե մեղադրյալը ստանում էր երեքից ավելի հարվածներ, նա սրտակեղեք ձայներ էր հանում: Բայց երբեմն չարագուշակ կերպով լռում էր կամ կորցնում գիտակցությունը: Ծեծվածին մի կողմ էին քաշ տալիս և պառկեցնում մարմնամարզական ներքնակի վրա, որտեղ նա ջղաձգվում ու գալարվում էր ցավից: Մի տասը րոպեից հետո ցավը մի քիչ մեղմանում էր և նստատեղի վրա հայտնվում էին երեք կարմիր զոլեր:

Ճիպոտահարվելը ավելի սարսափելի էր: Ճիպոտի երեք հարվածից հետո վերակացուները պատժվածի թևերի տակից բռնելով տանում էին բժշկի մոտ:

Ավելի փորձված տղաները խորհուրդ էին տալիս, որ եթե անգամ հանցավոր էլ չես, չժխտես հանցանքդ, որովհետև, եթե ապացուցեն, որ դու հանցավոր ես, կստանաս վեց հարված: Եվ իհարկե հազվադեպ էր պատահում, որ մեզանից որևէ մեկը կարողանում էր արդարանալ:

Հիշում եմ, առաջին անգամ երբ ես ներկա էի մարմնական պատժի ժամանակ՝ պապանձվել կանգնել էի, իսկ սիրտս ուղղակի պայթում էր:

Ներս մտավ կառավարիչը: «Կապը կտրածը», որ փորձել էր դպրոցից փախչել, կանգնած էր սեղանի հետևում: Նա այնքան փոքր էր, որ երևում էին միայն նրա գլուխն ու ուսերը: Նիհար դեմքի վրա աչքերը թվում էին հսկայական:

Դպրոցի տնօրենը հանդիսավոր կերպով նրա հանցանքները թվարկելուց հետո, հարցրեց.

— Քեզ մեղավոր ճանաչո՞ւմ ես, թե՞ ոչ:

Մեր «կապը կտրածը» չէր պատասխանում և հանդուգն հայացքով նայում էր: Նրան բերեցին պատվանդանի մոտ, սակայն նա այնքան կարճահասակ էր, որ հարկ եղավ կանգնեցնել փայտե դատարկ արկղի վրա, հակառակ դեպքում նրա ձեռքերը չէին հասնի կաշվե օղակներին: Նա մտրակի երեք հարված ստացավ, և նրան քարշ տվեցին բժշկի մոտ:

Հինգշաբթի օրերը խաղահրապարակում հանկարծակի հնչում էր շեփորի ձայն: Մենք անմիջապես ընդհատում էինք խաղը և, քարացած, արձանանում էինք տեղում, իսկ նավապետ Հինդրեմը խոսափողի միջով տալիս էր նրանց անունները, ովքեր ուրբաթ օրը պետք է մարմնական պատժի ենթարկվեին:

Մի հինգշաբթի օր, ի մեծ զարմանս, հանկարծ ես լսեցի, որ տրվեց նաև իմ անունը: Սակայն ես ինձ բոլորովին հանցավոր չէի զգում: Եվ ես անբացատրելիորեն, նույնիսկ մի հաճելի հետաքըրքըրասիրություն զգացի, գուցե նրանից, որ ինձ զգացի ողբերգության կենտրոնում: Դատի օրը առաջինը ես խոսեցի: Դիրեկտորը հայտարարեց.

— Քեզ մեղադրում են նրանում, որ դու ցանկացել ես հրդեհել արտաքնոցը:

Դա ճիշտ չէր: Տղաներից ինչ-որ մեկը իսկապես արտաքնոցի քարե հատակի վրա վառել էր մի երկու կտոր թուղթ, իսկ ես այնտեղ մտա այն պահին, երբ թուղթը դեռ վառվում էր: Բայց ես բոլորովին չեմ մասնակցել այդ «հրդեհման» գործին:

— Ընդունո՞ւմ ես, որ հանցավոր ես, թե՞ ոչ,— հարցրեց տնօրենը:

Զափազանց հուզված, ներքին մի ուժով, որի դեմ ես անզոր էի, վրա բերեցի.







— Ընդունում եմ:

Երբ ինձ տանում էին դեպի սեղանը, իմ մեջ ո՛չ հուզմունք կար այդ անարդարության դեմ, ո՛չ դառնություն. ես միայն պատրաստվում էի ինձ անծանոթ սարսափին: Ես երեք հարված ստացա: Այնքան սաստիկ էր ցավը. որ շունչս կտրվում էր: Բայց ես ոչ մի անգամ չբղավեցի: Ցավից կծկված, ինձ քարշ տվեցին դեպի մարմնամարզության ներքնակը, որտեղ ես պիտի ուշքի գայի. սակայն ես ինձ հերոս էի զգում:

Իմ եղբայր Սիդնեյը աշխատում էր խոհանոցում և ինձ սպառնացող պատժի մասին իմացավ այն ժամանակ. երբ նրան մյուս տղաների հետ միասին քշելով բերեցին մարմնամարզության դահլիճը: Նկատելով. որ սեղանի հետևից երևում է նաև իմ գլուխը. նա ուղղակի ցնցված էր: Հետո նա ինձ պատմեց. որ երբ ինձ դատում էին. նա ուղղակի գոռացել է կատաղությունից:

Մեր դպրոցում փոքր եղբայրը մեծ եղբորը անվանում էր «փոքրիկս»: Դա ասվում էր հպարտությամբ և մի քիչ վստահություն էր ներշնչում քեզ: Երբեմն. ճաշարանից դուրս գալիս. ես հանդիպում էի «փոքրիկիս». և Սիդնեյը աննկատելի կերպով գրպանս էր մտցնում հաստ շերտով կարագ քսած երկու կտոր հաց. որ նրան հաջողվում էր թաքցնել խոհանոցում: Անմիջապես ես այն խցկում էի բաճկոնիս տակ. իսկ հետո կիսում էի ընկերներիցս որևէ մեկի հետ: Չեմ կարող ասել. թե քաղցած էինք մնում. սակայն կարագի հաստ շերտով բուտերբրոդը սովորականից դուրս ճոխություն էր: Բայց այդ ճոխությունը երկար չտևեց: Ընդունվելով ուսումնական «Էքսմուտ» նավի վրա. Սիդնեյը շուտով դուրս եկավ Հենուելից:

Երբ լրանում էր որբանոցի տղաների տասնմեկ տարին. նրանց առաջարկում էին կամ զինվորագրվել կամ գնալ նավատորմ: Եթե տղան ընտրում էր նավատորմը. նրան ուղարկում էին «Էքմուտի» վրա: Իհարկե. ոչ ոքի չէին հարկադրում. սակայն Սիդնեյը վաղուց էր ուզում նավաստի դառնալ: Եվ ես մնացի բոլորովին մենակ:





# ՍԵՆԱՅԻ ԱՓԻՆ

*Հայ անվա՛նի նկարիչ Սեդրակ Առաքելյանը Փարիզում սովորելու ժամանակ սիրում էր ազատ ժամերին շրջել Սենայի ափերին, հիանալ նրա գեղեցկությամբ ու շատ ժամանակ էլ՝ նկարել:*

*Աշնանային մի օր, երբ սովորականի պես կրկին շրջում էր Սենայի ափերին, նրա ուշադրությունը գրավեց մի շիկահեր պարոն: Սա նստել էր քարին և ջուրն էր նետում շողշողուն մի դրամ, իսկ ցնցոտիներով երկու երեխա իսկույն սուզվում էին ջրի տակ, գտնում դրամը և բերում հանձնում պարոնին:*

*Այդ խաղը դուր չեկավ Առաքելյանին, և նա մոտեցավ ֆրանսիացուն.*

*— Պարոն, այդ ի՞նչ եք անում:*

*Վերջինս մի անգամ ոտից գլուխ չափեց նկարչին և քմծիծաղ տալով պատասխանեց.*

*— Չե՞ք տեսնում, ի՛նչ է... Բայց նրանք այնքան արագ են գտնում ու բերում, որ ես զարմանում եմ: Շատ ճարպիկն են այդ անիծվածները... Սրանցից իսկական մարգարիտ որսորդներ դուրս կգան:*

*Իսկ որքա՞ն եք վճարում դրա համար...*

*— Է՜հ, նայած ինչ արագությամբ են դուրս բերում. պատահում է մեկ քառորդ, շատ ժամանակ էլ նետած դրամի կեսը:*

*— Բայց դա շատ չնչին է... չէ՞ որ նրանք կարող են մրսել, հիվանդանալ:*

*— Է՜, պարոն... Դրանք ամեն ինչի սովոր են: Շները կաղալուց չեն սատկում: Դե՛, Ֆրանս, Պեդրո, — դարձավ նա երեխաներին, — հիմա քսան կոպեկանոց եմ նետում. տասը ձերը կլինի. շո՛ւտ, — և դրամը նետեց ջուրը:*

*— Սպասեցեք, — երեխաներին ասաց նկարիչը և դառնալով շիկահեր պարոնին ավելացրեց.— Ահա մեկ ռուբլի, ես այն նետում եմ ջուրը, դրան գումարած նաև քո քսան կոպեկը, հանիր և բոլորը քեզ...*

*Պարոնը զարմացած նայեց Առաքելյանին.*

*— Ի՞նչ է, դուք ցնորվե՞լ եք:*

— Ինչո՞ւ, մի՞թե դուք չեք ուզում փող աշխատել, — հանգիստ ասաց նկարիչը։

— Պարոն, դուք ինձ վիրավորում եք և, վերջապես, ի՞նչ եք ձեր քիթը խոթում ամեն տեղ։

— Իսկ դուք ինչո՞ւ եք տանջում երեխաներին, չէ՞ որ նրանք մինչև տուն հասնեն, կմրսեն...

— Իսկ մենք տուն չունենք, — ասաց երեխաներից մեկը, որն ավելի համարձակ էր։

Ֆրանսիացին ավելի բորբոքվեց.

— Ես կրկնում եմ, պարո՛ն, կամ հեռացեք, կամ...

— Ես չեմ հեռանա, մինչև դուք երեխաներին չվճարեք երեք ռուբլի։

— Առ քեզ, — և գնդակի պես կլորիկ պարոնը անսպասելիորեն այնպես հարվածեց նկարչին, որ վերջինս կծկվեց ցավից, ներկերի արկղը սահեց ուսից և աղմուկով ցած ընկավ։ Երեխաները սարսափած սեղմվեցին իրար։



Աղաջանյանը ուշքի գալով, տարածեց երկար ձեռքերը, ճարպկորեն գրկեց ֆրանսիացուն և քարի նման նետեց ջուրը։ Ապա հանգիստ բարձրացրեց ներկերի արկղը, գցեց ուսը և կանգնեց երեխաների մոտ։

Մինչ այդ, ֆրանսիացին պղտոր ջուրը կուլ տալով, գլուխը դուրս հանեց ջրից, մի ձեռքով հազիվ ճանկեց գլխարկը և մի կերպ դուրս եկավ ափ։ Շատ ծիծաղելի էր նա այդ վիճակում, ջուրը առվակի պես հոսում էր նրա վրայից։ Երեխաները չզսպեցին իրենց և սկսեցին ծիծաղել... Թրջված պարոնը սպառնալիքներ ուղղելով նկարչի հասցեին, առանց ետ նայելու հեռացավ։ Իսկ երեխաներից մեկը, իսկույն նետվեց ջուրը և դուրս հանեց բաճկոնը, կոպեկանոցը։ Աղաջանյանը տվեց նրանց նաև իր մոտի մեկ ռուբլիանոցը...

— Շնորհակալություն, պարոն նկարիչ. մենք երբեք այսքան փող չէինք աշխատել, — և երկու երեխաները գոհ ժպիտով հրաժեշտ տվեցին Աղաջանյանին։

ԴԱՆԻԵԼ ՍԱՐԳՍՅԱՆ

## ՈՒՐ ՂԵԿԱՎԱՐՆ Է ՆՈՎԻԿՈՎԸ

Բ. ՄԱՐԿՈՍՅԱՆ



Ինչպես ամեն մի մարզաձև, այնպես էլ հնգամարտըն ունի իր ծագումը։ Այդ մասին ահա թե ինչ է պատմում ռազմական հնամենի զրույցը։

Երկար ժամանակ թշնամին պաշարել էր սահմանամերձ զինվորական ստորաբաժանումը։ Դրսի աշխարհի հետ բոլոր տեսակի կապերը կտրված էին։ Դրությունն օրհասական էր։ Օգնություն հայցելու նպատակով անհապաղ հարկավոր էր սուրհանդակ ուղարկել հայրենակիցների մոտ։ Վտանգավոր մարտական առաջադրանքի իրագործումը կամովին ստանձնում է խիզախ սպաներից մեկը։ Նա անմիջապես ցատկում է փրփրաբաշ նժույգի թամբին ու նետվում թշնամու թիկունքը։ Պաշարման օղակը ճեղքելու նպատակով սպան կռվի է բռնվում։ Այդ ժամանակ սպանվում է երիվարը՝ գետին տապալելով հայրենասերին, բայց նա, առանց վայրկյան կորցնելու, ոտքի է կանգնում, պատյանից հանում է սուսերը։ Մենամարտում կոտրվում է զորականի թուրը, սակայն արիասիրտը չի հանձնվում. շարունակում է դիմադրել ատրճանակով։ Սպանելով իր վրա հարձակվողներին, նա հասնում է մոտակա լիճը ու նետվում ջուրը։ Երկար լողալուց հետո, քաջամարտիկը դուրս է գալիս մյուս ափը ու վազքով սլանում քարքարոտ, խորդուբորդ բլրալանջերով, մացառուտ արահետներով, թռչում ջրով լցված վիհի վրայով ու անհետանում հակառակորդի տեսադաշտից։ Քիչ անց, հայրենակիցները օգնության են շտապում, փրկվում է զորագունդը։

Ի պատիվ այդ քաջագործության, ռազմական բարձրագույն հրամանատարությունը որոշում է ամեն տարի անցկացնել մրցախաղեր պայքարի այն հինգ ձևերից, որոնցով մարտնչել ու հաղթել էր հայրենասեր սպան։ 1912 թվականին պայմական հնգամարտը պաշտոնապես մըտ-

ցըվում է օլիմպիական խաղերի ծրագրում: Տարիներ անց այս մարզաձևը դադարում է միայն զորայինների սեփականությունը լինելուց: Նրանով զբաղվում են նաև խաղաղ աշխատանքի մարդիկ ու նոր՝ ժամանակակից հնգամարտ անունը տալիս ուժեղների, խիզախների, ճարպիկների մարզաձևին: Եվ ահա արդեն 17 տարի է, ինչ աշխարհի առաջնության մրցումներ են անցկացվում ժամանակակից հնգամարտից: Այդ մրցումներում չորս անգամ թագակիր է դարձել երևանցի Իգոր Նովիկովը՝ նվաճելով ոսկե մեդալներ: Նա երկու անգամ էլ արժանացել է արծաթե մեդալների, հաղթել է Մելբուռնի և Տոկիոյի օլիմպիական խաղերում:

Ամենուրեք նրան ուղեկցել են հիացմունքի որոտընդոստ ծափերն ու բացականչությունները, ջերմ սերն ու համակրանքը: Անգլիացի մարզասերները Նովիկովին շնորհավորելով աշխարհի չեմպիոն դառնալու առթիվ, նրան անվանեցին «հայկական վագր» և ուսանողական ակումբներից մեկը կոչեցին նրա անունով: Նովիկովի անունը գրանցվել է Մեքսիկայի ոսկե գրքում:

Փառաբանված հնգամարտիկը, սպորտի վաստակավոր վարպետը այժմ թողել է մրցասպարեզները և նվիրվել մարզական աշխատանքի: Նա Սովետական Միության երիտասարդական հավաքական թիմի ավագ մարզիչն է և Հայաստանի պատանի հնգամարտիկների սպորտային դպրոցի ղեկավարը:

Հնգամարտիկների կոփման այդ դարբնոցն ունի ընդամենը վեց տարվա պատմություն: Աշխարհահռչակ մարզիկ Նովիկովի մոտ ուսանելու ցանկություն են հայտնում շատ-շատերը: Այժմ դպրոցում գոյություն ունեն լողի, եռամարտի և հնգամարտի 25 խմբեր, որտեղ սովորում են 8 տարեկանից բարձր մոտ 300 պատանիներ: Խմբերում դասերը տեղի են ունենում ամբողջ տարին: Լողի պարապմունքներն անցկացվում են ֆիզկուլտուրայի ինստիտուտի, ֆիզկուլտուրնիկի կենտրոնական տան և ձմեռային լողավազաններում, եռամարտի և հնգամարտի տարբեր ձևերինը՝ պետական ձիարշավարանում, «Դինամոյի» հրաձգարանում և այլ վայրերում: Սաներին այդ մարզավայրերն է տանում դպրոցի ավտոբուսը:

Առաջիկայում ուսումնական հաստատությունը կունենա իր սեփական մարզական կառույցները: Դրանք ստեղծվում են պետական ձիարշավարանում: Ներկայումս պատրաստ են ձիարշավի վազքուղիները, սուսերամարտի դահլիճը, բաց և ծածկված հրաձգարանները, ուր արդեն պատանիները մարզվում են: Շարունակվում է 50 մետր երկարությամբ բացօթյա լողավազանի կառուցումը: Շուտով ժամանակ ջեռուցմամբ կտաքացվի նրա ջուրը: Այնտեղ կլինեն նաև հանդերձարաններ, հանգստի սենյակներ, գրասենյակներ և այլն:




Մարզիչների ջանքերն ապարդյուն չեն անցնում: Նրանց սաներն աստիճանաբար աճում են, դառնում լավ մարզիկներ: Մի՞թե դրա վառ ապացույցը չէ, որ Էդվարդ Բարոյանը, Հովսեփ Սալմանյանը, Էդիկ Դանիելյանը, Վալերիկ Պողոսյանը արդեն արժանացել են ՍՍՀՄ սպորտի վարպետի կոչման: Նրանք բազմիցս մասնակցել են համամիութենական ու միջազգային մրցումների և հաջողության հասել:

Ապրիլի վերջերին Երևանում անցկացված ժամանակակից հնգամարտի միջազգային ավանդական մրցումներում Բարոյանը գրավեց ընդհանուր առաջին տեղը և լրացրեց «Միջազգային կարգի ՍՍՀՄ սպորտի վարպետի» նորմա: Նա առաջ անցավ այնպիսի ճանաչված մարզիկներից, ինչպիսիք են հունգարացիներ՝ աշխարհի կրկնակի չեմպիոն Ա. Բալչոն, երիտասարդության գծով աշխարհի չեմպիոն Յա. Բոդնարը, ՍՍՀՄ ժողովուրդների երրորդ սպարտակիադայի հաղթող, երևանցի Վ. Զախարենկոն և ուրիշներ:

Մեծ են Ի. Նովիկովի ղեկավարած պատանի հնգամարտիկների դպրոցի հնարավորությունները ու հեռանկարները:

Այսպիսի դպրոց մեր երկրում միայն Երևանում կա: Եվ դա պատահական չէ. Հայաստանի մայրաքաղաքում է ապրում Իգոր Նովիկովը: Բազմահմուտ մարզիկը երկար տարիների ընթացքում կուտակած մարզումների իր փորձը, ձեռք բերած գիտելիքները այսուհետև մեծ սիրով կըհաղորդի հայրենի պատանիների, որոնց շարքերից մի օր կծնվեն նոր Նովիկովներ:

# ԻՆՔՆ ԻՐԵՆ ՓՐԿԵՑ

ՄԱՐՈՒՍՅԱ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Այդ օրը խիստ շոգ էր Երևանում: Թեև արեգակը բավական թեքվել էր դեպի արևմուտք, սակայն այնպես տոթ էր, որ ոչ մի տերև չէր շարժվում:

Կարինեն վերջին անգամ ստուգեց իր ձեռքով պատրաստած թղթե նավակը և մոտենալով երկվորյակ քույրիկին՝ փսփսաց.

— Մարինե, նավակ եմ պատրաստել, եկ գնանք Զանգու, տեսնենք լավ կլողա՞:

Քույրիկներն այնպես կգուշորեն դուրս եկան, որ մայրը չնկատի: Ջրանցքը, որին փոքրիկները Զանգու են անվանում, հանդիպելով Կալինինի փողոցին, անցնում է նրա տակից, ապա դուրս գալիս ու շարունակում իր ընթացքը: Փողոցը կամրջի դեր է կատարում: Ամռանը ջրանցքի ջուրը շատ առատ է լինում և հոսում է համարյա ափեափ:

Նավակը Մարինեն վերևից ջուրն էր գցում, իսկ Կարինեն պառկում էր կամրջի վրա և, ձեռքը մեկնելով, բռնում այն: Այս անգամ Կարինեն չհասցրեց ժամանակին բռնել նավակը և ձեռքն ավելի երկարելով, գլխիվայր ջուրն ընկավ ու անհետացավ կամրջի տակ: Մի պահ ամեն ինչ խառնվեց իրար և նրան թվաց, թե ինքը խեղդվում է: Բայց ահա ջուրը նրան արագ թափով առաջ տարավ, խփեց ինչ-որ բանի և այն է՝ պիտի անցկացներ նրա տակով, Կարինեն կառչեց այդ առարկայից: Դա փողոցի տակով անցնող երկաթյա խողովակ էր: Դունչը դնելով նրա վրա, Կարինեն խոր շունչ քաշեց, բաց արեց աչքերը և նայեց շուրջը: Սարսափելի մութ էր: Նա խողովակը բաց չթողեց, ու այն միտքը, որ քույրիկը օգնության կկանչի մարդկանց փոքր-ինչ հուսադրեց նրան: Նա իր փոքրիկ ձեռքերի մեջ ուժեղ ցավ էր զգում, բայց խողովակը բաց չէր թողնում: Այդպես լավ էր, գլուխը ջրից դուրս էր մնում. իսկ եթե թողնի, ջուրն իրեն կտանի ու իրենց հարևանի տղայի նման ինքն էլ կխեղդվի: Կյանքի համար ու մահու դեմ անասելի այդ պայքարում մաքառում էր դեռևս յոթ տարին չլրացրած փոքրիկ Կարինեն: Նա նույնիսկ սիրտ արեց նայել շուրջը և նկատեց, որ իր բռնած խողովակը բավական երկար է: Կարինեն կգուշորեն շարժվեց դեպի խողովակի ծայրը և նկատեց, որ պատի վրա մի փոքրիկ փոս կա: Նա մեծ տանջանքով կարողացավ գլուխն ու ուսերը տեղավորել այդ փոսում և բռնել ինչ-որ երկաթյա օղից:

Մի՞թե հկուր էր այդքան խիկախում ու սպասում Կարինեն:

Քրոջ ծղրտոցի և օգնություն կանչող ձայնի վրա նույն վայրկյանին կամուրջի մոտ էին հավաքվել ոչ միայն հարապատները, այլև թաղամասի բնակիչներն ու անցորդները: Շատերն անմիջապես ջուրը նետվեցին, փորձեցին մտնել կամուրջի տակ. բայց ետ քաշվեցին: Թեև վաղուց կանգահարել էին ջրային տնտեսություն, սակայն ջուրը, կարծես բոլորովին անտեղյակ մարդկային վշտին, գիժ խշշոցով գալիս էր ու գալիս:

Անցել էր ավելի քան երեք ժամ: Բազմության հետ գնալով թանձրանում էր նաև մութը և իր սև թևերով ծածկում կամուրջն ու ջրանցքը:

Բազմությունը ճեղքելով առաջ մխրճվեց մի մեքենա և լուսավորեց շրջապատը: Վերջապես ջրի մակարդակը կամաց-կամաց սկսեց իջնել, և թաղի բնակիչներ Արտաշեսը, Էդիկը, Գրիշան և Աշոտը ձեռքի լապտերիկները վերցրած մտան կամուրջի տակ: Վաղուց, իհարկե, բոլորի մեջ մեռել էր երեխային փրկելու հույսը, նրանք փնտրում էին երեխայի դիակը: Խողովակին կառչած Կարինեին առաջինը նկատեց Արտաշես Ղարիբյանը և առաջ նետվեց: Երեխան մի պահ կարծես չհավատաց աչքերին, բայց շուտով իրեն գտավ Արտաշես քեռու ուժեղ ու հուսալի ձեռքերում: Բազմությունը



մի աչք ու մի ականջ դարձած՝ համարյա սրտատրոփ սպասում էր: Վայրկյանը ժամ էր թվում, կանանցից շատերը վերսկսում էին բարձրաձայն լացը: Բայց ահա կամրջի տակից դուրս է գալիս նրանցից մեկը՝ իր գրկում պահած երեխայի... դիա՞կը... Օ՜, ոչ, կենդանի ու աչքերը լայն բացած Կարինեին: Մարդիկ մի ակնթարթ կարծես ետ են ընկրկում՝ անհավատալին տեսնելով, ապա օդը դղրդում է միահամուռ ուռաներից, ծափահարություններից, կարմանքի բացականչություններից: Իրար հրմշտելով շտապերը վազում են դեպի Մայիսի 9-ի փողոցի № 2 շենքը, որտեղ ապրում է հրաշքով կենդանի մնացած այդ փոքրիկը: Նրանք ուզում են տեսնել ու շոշափել նրան: Իսկ Կարինեն արդեն իր մայրիկի գրկում էր և իր անմեղ աչքերով ասես ներումն էր խնդրում սխալ արարքի համար, որով այդքան վիշտ ու անհանգստություն էր պատճառել բոլորին:

— Ո՞րն եք համարում ձեր լավագույն պարտիան մատչում,— այսպիսի հարցով դիմեցին աշխարհի չեմպիոնին մրցախաղից անմիջապես հետո Մոսկվայում կայացած սովետական և արտասահմանյան ժուռնալիստների պրես-կոնֆերանսում:

— Յոթերորդը,— առանց հապաղելու պատասխանեց չեմպիոնը:

Նույն կարծիքը հայտնեց Տ. Պետրոսյանի մարզիչ ու մարտավկա, նրա ստեղծագործական անկեղծ բարեկամ, գրոսմեյստեր Իսահակ Բոլեսլավսկին:

Յոթերորդ պարտիայում մրցակիցները կիրառեցին տեսության մեջ «Թագուհու զինվորների ըսկըզբնախաղ» անունը կրող դեբյուտ: Սպիտակներով խաղում էր հավակնորդը: Երբ արքաները փոխատեղվեցին տարբեր թևերում, պարզ դարձավ, որ տեղի է ունենալու սուր պայքար: Իրականում այդպես էլ եղավ: Նախ չեմպիոնը մտածված քայլերով կասեցրեց Սպասսկու հարձակումները՝ ամուր փակելով դեպի իր արքան տանող «մատույցները», ապա բացեց «g» գիծը և շեշտակի գրոհ ձեռնարկեց մրցակցի արքայական թևում: Այնուհետև Տ. Պետրոսյանը զոհաբերեց որակ և հավակնորդի դիրքը դարձավ անհուսալի: Պարտիան մնաց անավարտ և հետաձգվեց այսպիսի դիրքում:



Ինչպես տեսնում եք, սևերի դիրքային առավելությունը ակընհայտ է, սակայն չեմպիոնը որոշել էր խաղը եզրափակել գեղեցիկ կերպով: Տիգրանը 41-րդ գաղտնի քայլի վրա մտածեց շուրջ կես ժամ և գտավ այդ գեղեցիկը. նա գրանցել էր 41.... Չg4, զոհաբերելով ևս մեկ ֆիգուր, այս անգամ նժույգը: Սպասսկին ստիպված եղավ վերցընել ձին՝ 42. fg: Եվ այսպես հավակնորդը մի ամբողջ նավակի գերակշռություն «ձեռք բերեց»: Սակայն հետևեց 42.... f3! 43. Նg2 fg+ և սպիտակները անձնատուր եղան: Այս պարտիայում աշխարհի չեմպիոնը ցուցաբերեց գրոհելու իր հիանալի ունակությունները:

# ԵՐԿՈՒ ՆՄՈՒՇ ԱՇԽԱՐՀԻ ՉԵՄՊԻՈՆԻ ՏՊԱՎՈՐԻՉ ԽԱՂԱՎԵՐՋԵՐԻՑ

* * *

Խոսենք մի այլ խաղավերջի մասին... Միևնույն պարտիայում երկու անգամ զոհաբերել որակ, այնուհետև թագուհի... Նման դեպք հազվադեպ է լինում գրոսմեյստերների պարտիաներում, ոչ միայն աշխարհի առաջնության մատչերի ժամանակ, այլև առհասարակ տուրնիրներում: Իսկ դա տեղի ունեցավ Պետրոսյան-Սպասսկի մատչի 10-րդ պարտիայում: Զոհաբերությունների «հրավառության» հեղինակն էր մեծատաղանդ Տիգրան Պետրոսյանը:



Բացառիկ լարված պայքարից հետո, խաղատախտակի վրա ըստացվեց մի այսպիսի դիրք: Տ. Պետրոսյանը (սպիտակներ) խաղաց 30. Թh8+! Թագուհու գեղեցիկ և էֆեկտավոր զոհաբերություն: Սպասսկին անմիջապես անձնատուր եղավ, որովհետև ինչպես ինքներդ կարող եք համոզվել, թագուհուն վերցնելուց հետո սևերը ֆիգուր են կորցնում: Չեմպիոնի եզրափակիչ քայլը Մոսկվայի էստրադային թատրոնի հանդիսականները բուռն ծափահարություններով ընդունեցին:

Այստեղ հարկ կլինի հիշել անցյալի մի հետաքրքիր էպիզոդ: 1956 թ. Մոսկվայի չեմպիոնատում Տ. Պետրոսյանը և Վ. Սիմագինը (այժմ նա միջազգային գրոսմեյստեր է) հավասար արդյունքով բաժանեցին 1—2 տեղերը: Չեմպիոնի «հարցը» որոշելու համար նշանակվեց լրացուցիչ մատչ: Հաղթանակ տանելով 3,5 : 1,5 հաշվով, Տիգրանը երկրորդ անգամ նվաճեց մայրաքաղաքի № 1 շախմատիստի կոչումը: 5-րդ պարտիայում Տ. Պետրոսյանը իրականացրել էր այս տարվա մատչի 10-րդ պարտիայի տպավորիչ կոմբինացիան: Տասը տարի առաջ թագուհին նույնպես «զոհվեց» «h8» դաշտի վրա, ապա ձիով վերցվեց «f7» նավակը և վերադարձվեց թագուհին: Բազմաքայլ կոմբինացիան պսակվեց Պետրոսյանի մեկ ֆիգուրի առավելությամբ:

Սիրելի երեխաներ, ինչպես տեսնում եք, շախմատում պատմությունը երբեմն կրկնվում է: Պետրոսյան-Սպասսկի մատչի 10-րդ պարտիայի «երկվորյակ» դիրքը դուք կարող եք գտնել և համեմատել Ի. Մայզելիսի «Շախմատ» դասագրքում (1960 թ., էջ՝ 59):

*ԱՆԴՐ. ՀԱԿՈԲՅԱՆ*



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ՄԻՆԱՍ ԱՎԵՏԻՍՅԱՆԻ




## ԵՐԵՔ ՃԱՆԱՊԱՐՀ

Սուրենը, Աշոտը և Կարենը որոշեցին գնալ կինո: Երբ դպրոցի շենքից դուրս եկան, Աշոտը առաջարկեց գնալ այգու մոտով:

— Ոչ, այդ ճանապարհը երկար է, եկեք գնանք ցայտաղբյուրի մոտով,— ասաց Սուրենը:

— Ի՞նչ ես ասում,— ասաց Կարենը,— այդ փողոցներով ավելի ուշ կհասնենք: Եկեք գնանք ստադիոնի կողքի փողոցով:

Մի քիչ վիճելուց հետո տղաներից յուրաքանչյուրը որոշեց գնալ իր առաջարկած ճանապարհով:

Եթե նրանք գնան համաչափ քայլերով, ո՞վ շուտ տեղ կհասնի:

Կետագծերով ցույց է տրված յուրաքանչյուրի ճանապարհը:

Առաջարկ՝ ԳԵՎՈՐԳ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ





Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԱԿՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 06858: Պատվեր՝ 1293: Տպաքանակ՝ 16 920: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 1 VIII. 1966 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 20 կ.

## ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ



Ի՞նչ կստացվի, եթե միևնույն թվերով նշված մասնիկները ներկեք միատեսակ գույնով:

# Պատասխանում ենք

### «ՊԻՈՆԵՐ» № 5

**«ԽԱՉԲԱՌ»** — Ուղղահայաց — 1. Ալբիոն: 2. Կամա: 3. Լենա: 4. Մակլայ: 7. Մազրա: 8. Դելտա: 10. Օազիս: 13. Նիագարա: 14. Կորսիկա: 16. Ադանա: 18. Սիբիր: 21. Ոստան: 22. Օտտավա: 23. Նայադ: 27. Վերայ: 28. Թայմիր: 31. Գանա: 32. Ռիգա:

Հորիզոնական — 5. Ալթայ: 6. Դեկան: 9. Անապա: 11. Ցեյլոն: 12. Վալդա: 15. Էտնա: 17. Լիսաբոն: 18. Սպիկ: 19. Կալուգա 20. Ուսսուրի. 24. Ասիա: 25. Արկտիկա 26. Ադաս: 29. Նանսեն: 30. Գանձակ: 31. Գավառ: 33. Գասնի: 34. Ուտ-մեն:

**«ՄԻ ԱՆԳԱՄ ԱՆԱՊԱՏՈՒՄ»** — 1. Կարա-Կումը գտնվում է Թուրքմենստանում և ոչ թե Ղազախստանում: 2. Այնտեղ վագր չի լինում: 3. Ուղտերը երեք օրում չեն սատկի: 4. Ամու-Դարյան ոչ թե խաղաղ, այլ շատ արագահոս գետ է: 5. Նրա ջրերը շատ մեծ քանակությամբ տիղմ են պարունակում իրենց մեջ, ուրեմն մաքուր ու թափանցիկ չեն կարող լինել: 6. Կեղտոտ և պղտոր ջուրը չի կարող հրապուրել՝ նրանում չի կարելի լողանալ: 7. Սաքսաուլի ծառը տերև չունի, ուրեմն հով անել չի կարող: 8. Անապատում նապաստակ չի լինում: 9. Կարա-Կումում ճայ չի լինի: 10. Կարա-Կումում կանաչ թփեր չկան: 11. Երեք քարով երեք ճայ չեն սպանի: 12. Կարա-Կումը ավազոտ անապատ է և ոչ թե քարքարոտ, ուրեմն այնտեղ քար լինել չի կարող:

### ՊԻՈՆԵՐ № 6

**«ԽԱՉԲԱՌ-ՇԱԽՄԱՏ»** — Ուղղահայաց — 1. Սարո: 3. Անգլիա: 4. Դաշտ: 5. Տուր: 6. Գասպարյան: 9. Շտեյն: 11. Բոտվիննիկ: 12. Կյուրաստ: 13. Սպասսկի: 14. Մոսկ-վա: 19. Սոչի: 21. Լասկեր: 23. Արքա: 24. Պորտիշ: 27. Ալյոխին: 28. Սուետին: 30. Շախմատ: 32. Որակ: 33. Շախ: 35. Տալ:

Հորիզոնական — 2. Դարգա: 5. Տայմանով: 7. Ուլման: 8. Արարատ: 10. Պատ: 15. Պետրոսյան: 16. Կուբա: 17. Կանն: 18. Լարսեն: 20. Ֆլոր: 22. Կոտով: 25. Փիղ: 26. Կորչնոյ: 28. Սպարտակ: 29. Տոլուշ: 31. Կենտրոն: 34. Մատ: 36. Զի: 37. Նարդի: 38. Նավակ:

Նա ապրեց երկար ու բեղմնավոր կյանք՝ իտալացի այդ նկարիչն ու ճարտարապետը, արձանագործն ու բանաստեղծը, և դարձավ Վերածննդի խոշոր դեմքերից մեկը: Նրա որմնանկարներն ու քանդակները միշտ էլ մարդկանց հիացրել են իրենց հզոր արվեստով:

Ո՞վ է այդ արվեստագետը և ինչպե՞ս է կոչվում այս քանդակը:



Սովետական խոշորագույն նկարչի վաղ շրջանի աշխատանքներից է այս նկարը, որը պատկերում է բանֆակցիներին: Այժմ ծերունազարդ նկարիչը դեռևս շարունակում է ստեղծագործել և ուսուցանում է նկարչական ակադեմիայում:

Ո՞վ է այս նկարիչը և ուրիշ ի՞նչ աշխատանքներ գիտեք նրանից:



ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ

20 կ.
ինդեքս 77806

# Բաժանորդագրվեցեք



«ՊԻՈՆԵՐ»
ԵՎ
«ԾԻԾԵՌՆԱԿ»
ամսագրերին

## 1967



Սիրելի երեխաներ.

1967 թվականին դուք լավ նվեր կստանաք: Բացի «Պիոներ» ամսագրից լույս կտեսնի նաև «Ծիծեռնակ» մանկական հանդեսը: Դուք առաջ «Ծիծեռնակն» ստանում էիք «Պիոներ» ամսագրի հետ, բայց այժմ կարելի է «Պիոներին» և «Ծիծեռնակին» բաժանորդագրվել առանձին-առանձին: «Պիոներ» ամսագրում հետաքրքրական շատ նյութեր կըկարդաք դուք: Կշարունակվի տպագրվել Խ. Հրաչյանի «Զորս ոսկեգույն կոճակ» վիպակը, որի տպագրությունը կսկսվի հաջորդ ամսից: Ամսագրի էջերում դուք կգտնեք ձեզ հետաքրքրող բոլոր հարցերի պատասխանները: Շատ նյութեր կլինեն, որ կօգնեն ձեզ ավելի լավ կազմակերպելու ձեր դրուժինայի և օղակի աշխատանքները:

«Ծիծեռնակ» հանդեսում կտպագրվեն մանկական բանաստեղծություններ և պատմըվածքներ, հեքիաթներ ու զրույցներ, գունատիպ նկարներ:

Երեխաներ, բաժանորդագրվեցեք «Պիոներ» և «Ծիծեռնակ» հանդեսներին:

Մեկ տարվա բաժնեգինն է՝
«Պիոներ» 1 ռ. 20 կ.
«Ծիծեռնակ»—1 ռ. 20 կ.